Հաջորդ շրջափուլում վերադարձ էր կատարվում դեպի իրական և կայուն տիեզերք ու համակեցություն (ժամանակ): Սրբազան որսը նկատվում էր իբրև այս անցումների կարևոր նախապայման. զոհաբերվում էր արքայի երկվորյակը (փոխակերպված եղնիկի կամ եղջերուի) և նրա մարմնից վերաձևվում էր տիեզերքը: Նաև՝ նոր համակեցությունը՝ բաղկացած հիմնակազմիկ հանրախմբերից՝ քրմեր, ռազմիկներ, արտադրողներ:

Զիրավի ճակատամարտն ըստ այս խաղընթացի ներկայացնելու նպատակով՝ Պատմահայրն անգամ շրջանցել է պատմական ինչ-ինչ իրողություններ: Համաձայն նրա՝ հենց այստեղ իր անարգ մահն է գտել Մեհրուժան Արծրունին, ում պարսից շահը խոստացել էր Մեծ Հայքի գահը: Այլ խոսքով՝ Մեհրուժանը ներկայացվում է իբրև Պապի ծիսական երկվորյակը, ով անպայմանորեն պետք զոհաբերվի հանուն համընդհանուր կարգի ու խաղաղության:

Ասվածը հիմք է տալիս Պապ արքայի կառավարման սկիզբը լծորդելու ավանդական Աշխարհաժողովի իմաստաբանությանն ու կառույցին: Այն միտված էր պետականության շուրջ համախմբելու հայոց համակեցության բոլոր հանրախմբերին՝ համաձայնեցնելով նրանց շահերն ու նկրտումները: Քառսի հաղթարման այս ***աշխարհաժողովային*** հարացույցը էականորեն տարբերվում էր Արշակ II –ի ***հետհայաց հելլենիզմից***: Ինչպես ցույց է տալիս պատմության փորձը՝ այն վերջին ներունակ քայլն էր փրկելու Արշակունյաց Մեծ Հայքը քաղաքական և ընկերային էնթրոպիայից:

АЛЬБЕРТ СТЕПАНЯН

*Проф., доктор исторических наук*
*Заведующий кафедрой всемирной истории ЕГУ*
*bertstepanyan48@.gmail.com*

# К ИНТЕРПРЕТАЦИИ ОДНОГО ФРАГМЕНТА МОВСЕСА ХОРЕНАЦИ

## (История Армении, III, 34, 2-24)

## РЕЗЮМЕ

Статья посвящена драматическим событиям армянской истории, произошедшим в период правления Аршака II (350-368) и Папа (370-374).

В ответ на сепаратистские устремления армянской родовой аристократии, царь Аршак и его ближайшее окружение выработали новую политическую линию, которую можно охарактеризовать как ***ретро-эллинизм***. Ее успешно применил еще Арташес I (189-160 до н.э.) – основоположник династии Арташесидов. Она объединяла ряд важных компонентов социального общежития: сильная царская власть, служилая бюрократия, свободная сельская община, развитая городская жизнь.

Средоточием реформаторской деятельности Аршака II стал Аршакаван – новый царский град, построенный по названным принципам. Однако он простоял недолго: пал под натиском родовой аристократии и был сравнен с землей. Горькая учесть выпала и на долю самого царя: лишенный внутренней и внешней поддержки, он стал жертвой козней персидского двора.

Опираясь на поддержку Рима и патриотически настроенных нахараров, царевич Пап возвратился в Великую Армению и возглавил антиперсидскую борьбу. Ее главным событием стало сражение, произошедшее в Багреванде, на Дзиравском поле, на склонах священной горы Нифат.

В статье детально анализируются сведения Хоренаци о сражении, выявляя их мифоритуальный код. Это дало возможность определить, что место и план (сценарий) сражения были выбраны не случайно. Исходной точкой служила модель Общеармянского народного собрания (Ашхаражохов). Она строилась на *Близнечном мифе*, который предполагал трехтактное движение космоса и социума от хаоса (антивремя) к полюсу идеальной гармонии (вечность). Следующая фаза приводила к реальному космосу (время). Священная охота рассматривалась как необходимое условие подобных переходов. На ней ритуально жертвовался двойник царя (чаще, замененный

оленью или косулей) и из его тела воссоздавался космос. Это касалось, естественно, и социума с его основными классами – жрецы, воины, производители.

С целью представить Дзиравское сражение по данному сценарию, Хоренаци порой даже обходит исторические факты. Это, в частности, касается его утверждения о том, что на сражении был убит Меружан Арцруни, которому шах обещал трон Великой Армении. Иными словами, Меружан изображается как ритуальный близнец Папа, которому предстоит быть пожертвованным ради всеобщего порядка.

Все сказанное дает основание связывать начало правления царя Папа с идеей Общеармянского народного собрания. Оно имело целью объединить все слои общества вокруг национального государства. Этот путь существенно отличался от ретро-эллинизма Аршака II. И как показывает история, был последним эффективным шагом избегать политической и социальной энтропии, грозящей Аршакидскую Армению.

ՌՈՒԲԵՆ ՀԱԿՈԲՅԱՆ (ԹԱՐՈՒՄՅԱՆ)
*post@tarumian.am*

# ՀԱՅԿ ՆԱՀԱՊԵՏԻ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆԻ ԹՎԱԳՐՄԱՆ ՓՈՐՁ

Հայկ Նախապետի մասին Խորենացու շնորհիվ մեզ հասած տեղեկությունները հետազոտողների մեծ մասը համարում է առասպելական[1]: Սակայն Խորենացին իր գիրքը գրել է որպես պատմական ստեղծագործություն, այլ ոչ թե որպես առասպելների հավաքածու և զանազանել է առասպելական և պատմական իրադարձությունները[2]: Նա գտել է, որ առասպելական ոճավորմամբ իրեն հասած նյութում կարող են լինել պատմական արժեքավոր տեղեկություններ և իր այդ մոտեցումը արտահայտել է ամենայն հստակությամբ. «... *սակայն եւ ի նոցանէ՝ զոր ինչ հաւատին կարծեմք, առնուլ*»: Փաստորեն ելել է էվհեմերական դիրքերից ու, հավանաբար, նաև գիտակցելով, որ հնագույն ժամանակներից այլ ոճավորմամբ տեղեկություն իրեն չէր էլ հասնի: Ստորեւ կտեսնենք, որ պատմական հիմքեր կարող է ունենալ նաև Հայկի դրվագը:

Ինչպես դիպուկ նկատել է Հովհաննես Կարագյոզյանը, *Հայկ* անունը ինքնին ծագում է *հայ* ցեղանունից, որպես *հայ-իկ*, այն նույն կաղապարով, որով կառուցված են ցեղային պատկանելություն նշանակող հայերեն բազմաթիվ այլ բառերը, ինչպիսիք են. հնդ*իկ*, պարս*իկ*, տաճ*իկ* և այլն[3]: Իսկ դա նշանակում է, որ հայեր եղել են և Հայկից առաջ: Սրանից էլ հետևում է, որ մեր պատմագիտության խնդիրներից մեկը պետք է լինի՝ հնարավորին չափով, նաեւ նախահայկյան Հայքի պատմության վերականգնումը:

Ուստի անհրաժեշտ է թվագրել Հայկի անվան հետ կապված մեզ հայտնի իրադարձությունները: Հնարավոր է, որ դրա համար անհրաժեշտ փաստեր և որոշ տեղեկություններ կարելի է հայթայթել Խորենացու ար-

[1] E. g. *Образы Гайка и последующих этногонических патриархов происходят от древних богов. Образы и имена их противников тоже мифические, например, соперник Гайка Бел (т.е. аккад. Bēl, семит. bʿl 'господь'), повелитель Вавилона, идентифицируется с великим вавилонским богом Бэл-Мардуком.* А. Петросян, О происхождении армянского народа: проблема идентификации протоармян. http://rbedrosian.com/Classic/Petrosyan/Petrosyan_2009_ArmVest.pdf

[2] Թեև այդ անվամբ աստվածներ նույնպես կարող են եղած լինել. մեկը մյուսին չի հակասում: Օրինակ՝ Աշշուրը Ասորեստանի գերագույն աստծո անունն էր, սակայն հայտնի է, որ այդ նաև Ասորեստանի մի շարք թագավորների անվան բաղադրիչն էր:

[3] **Կարագեոզեան Յ.**, 1998, 174:

քայացուցակում, ելնելով այն կանխադրույթից, որ թեև այդ ցուցակը չափազանց անհամասեռ է՝ և ակնհայտորեն կազմված է առանձին հատվածներից, որոնք միայն հետագայում են միավորվել մեկ ցանկում, սակայն առանձին վերցված այդ հատվածները այնուամենայնիվ կազմված են *իրականությունը ճիշտ վերարտադրելու մղումով* և ըստ այդմ, ինչ որ մասերով կարող են համապատասխանել իրականությանը և այլ աղբյուրների որոշ տվյալներին:

Այսպես, Ուրարտուի թագավորներից մի քանիսը բավականին համոզիչ կերպով նույնացվում են[4] Խորենացուց մեզ հայտնի հայոց թագավորների անունների հետ, իսկ նրանց արշավանքների հաջորդականությունը մոտ է Խորենացու գրքում շարադրված հայկյանների տեղաշարժերին[5]: Մասնավորապես *Արգիշտի Ա*-ը նույնացվում է *Արա Գեղեցիկի* հետ: Իսկ ուրարտական *Էրիմենան* Խորենացու երկում հավանաբար համալրել է և՛ *Պարույրի* և՛ *Արամի* կերպարները: Դրանից բացի գոյություն ունի այդ *Արամի և* Ուրարտական *Արամ(ու)* թագավորի անունների գրեթե ճշգրիտ համապատասխանությունը, որը հնարավորություն է տալիս ենթադրելու, որ դրանք նույնպես վերաբերում են նույն անձնավորությանը: Սակայն չեն համապատասխանում նրանց դիրքերը երկու արքայացանկերում. ըստ Խորենացու Արամը Արա Գեղեցիկի հայրն է, մինչդեռ, թեև առաջինի ենթադրյալ նախօրինակ Արամուն իրոք նախորդում է Արգիշտի Ա-ին, սակայն հայրը չէ (հավանաբար նույնիսկ նախնին չէ) և թագավորել է նրա իսկական հորից՝ Մենուայից կես դար առաջ: Այնուամենայնիվ, ընդունելով, որ երկու անունների զույգերի նմանությունը՝ *Արամ–Արամ(ու), Արա Գեղեցիկ–Ար Գիշտի* ավելի ծանրակշիռ հիմք է հետագա վերլուծության համար, անտեսենք Մենուայի փոխարեն Արամ(ու)ին Արայի հայր դնելու վրիպումը[6]:

Այժմ, ելնելով *Արամ–Արամ(ու)* համապատասխանությունից, եթե Խորենացու ցուցակը *գոնե որոշ չափով* մոտ է իրականությանը, կարող ենք փորձ կատարել գտնելու Հայկի գահակալման տարիները, ընդունելով որ Արամից մինչեւ Հայկ թվարկված 6 սերունդներից յուրաքանչյուրի միջին

---

[4] **Իշխանյան Ռ.**, 1988, 78-79: **Հակոբյան Ռ.**, 1992, Հմ. 5, 78-81:

[5] **Յակոբեան Ա.**, Հայ էթնոսի կազմաւորման ժամանակը եւ պատմա-մշակութային առանձնայատկութիւնները, http://digilib.am/digilib/?menu=4&mainMenu=mainMenu&wa=yes#scroll

[6] Վրիպումը թերևս կարելի բացատրել այն հանգամանքով, որ Մենուա անվան առաջին վանկը հիշեցնում է Էրիմենա անվան (որն, ինչպես ասվեց, նույնպես առնչվում է Խորենացու Արամի հետ) երկրորդ վանկը: Կարելի է ենթադրել, որ Էրիմենա անունը բարդ բառ է, որի երկրորդ բաղադրիչը կարող էր և առանձին գործածվել՝ առանց սկզբնական վանկի, սակայն Խորենացու աղբյուրում բերված է եղել անվան ամբողջական տարբերակը, և դա էլ հենց բերել է շփոթության: Այսինքն, Մենուայի ամբողջական անունը կարող էր կազմված լինել երկու մասից (ինչպես եղել են՝ Աշուր-դան, Ադադ-նիրարի և այլն)՝ Էրի-Մենուա և դրանով նմանվել Արամ անվանը: Հիշենք, որ Խորենացու ցանկում էլ կան անուններ, որոնցում նկատելի է նույն կառուցվածքը. Արա-մանյակ, Արա-մայիս:

տևողությունը մոտ 30–33 տարի է[7]: Դա կնշանակի, որ եթե Հայկն ու Բելը պատմական դեմքեր լինեին, նրանք պետք է ապրեին մոտավորապես մ.թ.ա. ԺԱ դարի կեսերին:

Եւ ահա ուշագրավ է, որ այդ դարի կեսերին՝ 1074–1057 թվականներին, Ասորեստանի թագավորն էր Բել («Տեր») բաղադրիչով անունը կրող *Աշուր-<u>Բել</u>-կալան:* Արդյո՞ք սա պատահականություն է:

Ասորեստանի արքայացանկում Բել բաղադրիչով կա ևս երկու անձ, սակայն դրանք ապրել են շատ ավելի վաղ: Առաջինը՝ *Բել-Ուբանին*, ապրել է դիտարկվող ժամանակներից 700 տարի, իսկ երկրորդը՝ *Աշուր-Բել-նիշեշուն*՝ 400 տարի առաջ, հետևապես նրանք ոչ մի կերպ չէին կարող Հայկի ժամանակակիցը լինել, եթե ելնում ենք Խորենացու ցուցակի *<u>ընդհանուր մասշտաբից</u>*: Բայց ավելի կարևոր է մեկ այլ հանգամանք՝ նշված թագավորների անունների ստուգաբանությունը: *Բել-Ուբանի* ասուրերեն նշանակում է «*Տերն արարիչ է*», *Աշուր-Բել-նիշեշու*, թարգմանվում է «*Աշուրը տերն է իր ժողովրդի*», իսկ *Աշուր-Բել-կալա*, նշանակում է «Աշուրը *<u>տերն է ամենի</u>*»[8]: Իսկ սա չափազանց հիշեցնում է Խորենացու խոսքերը Բելի աշխարհակալության մասին. «*Քանզի անդ մոլեգնեալ այր իւրաքանչիւր, սուր ի կող ընկերի իւրոյ ձգելով՝ ջանային տիրել ի վերայ միմեանց. ուր պատահմունք ի դէպ ելանէին Բելայ՝ <u>բռնանալ ունել զամենայն երկիր</u>*»: Թվում է, թե այս նախադասությունը պարզապես Աշուր-Բել-կալայի անվան իմաստի ընդարձակ մեկնությունն է. հնարավոր է, որ Խորենացին կամ նրա աղբյուր Մար Աբասը իրենց առաջ ունեցել են նրա անվան հունարեն թարգմանությունը, որը որպես շարադրանքի մաս են ընկալել և գեղարվեստական հավելումներով ընդարձակել. երեւույթ, որ տեսնում ենք նաև Արգիշտի – Արա Գեղեցիկ, Ռուսա – Հրաչյա[9] դեպքերում:

Սա լրացուցիչ հաստատում է այն, որ Ասորեստանի արքայացանկի Բելը իրոք հենց Խորենացու նկարագրած *Բելն* է:

Ասորեստանյան աղբյուրներից այդ *Բելի* կյանքի և գործունեության մասին, մասնավորապես, հայտնի է, որ նա երկարատև պատերազմներ է մղել քոչվոր արամեացիների դեմ, զորքով հասել Միջերկրական ծով, ուր մասնակցել է «ծովաձիերի» որսի, գրավել է Կարքեմիշը, ստեղծել իր երկրում կենդանիների ցուցադրություն (կենդանաբանական այգի), շինարարություն ծավալել և այլն: Իսկ մեզ համար կարեւոր է այն հանգամանքը,

[7] Այս թիվը միջին ավել է, քան Ուրարտական թագավորների գահակալման միջին տևողությունը, որը կազմում է 25 տարի՝ հաշված Սարդուրի Ա-ից Սարդուրի Գ, սակայն պետք է նաև հաշվի առնել, որ Խորենացին հաճախ չի ընդգրկել իր ժամանակագրություններում աննշան գահակալներին: Նաև դրա հիմքը տալիս է հին աշխարհում սերունդների տևողության գնահատման ավանդույթը: Տե՛ս նաև **Немировский А. А.**, 2003, Vol. III, 3–18:

[8] **Åkerman K., Radner K.,** 1998, Vol. 1, Part I, A գրքում, 171.

[9] **Հակոբյան Ռ,** 1992, Հմ. 5, 78–81:

որ նա *պատերազմել է նաեւ Ուրուատրի*[10] երկրի դեմ. սա մեզ հայտնի *Ուրարտու* երկրանվան վաղ ձևերից մեկն է[11]:

Այսպիսով, պատմական նման հեռավորությունների համար բավականին ընդունելի ճշտությամբ պարզվում է, որ հենց այն դարաշրջանում, որը *տրամաբանորեն* բխում է Խորենացու գրքից, Ասորեստանի թագավորն էր հենց *Բել* անունը կրող գահակալը: Այն, թե ինչու հենց որպես *Բել* է հիշվել նրա անունը, այլ ոչ թե որպես *Աշուր-բել-կալա*, պետք է բացատրել նրանով, որ *Աշուր* սկզբնամասը շատ ընդհանուր էր և չէր բնութագրում հենց ա՛յս թագավորին, կամ էլ, չէր ընկալվում որպես անվան մաս, քանի որ համընկնում էր երկրի անվան և գլխավոր աստծո անվան հետ: Ասորեստանի 100-ից ավելի գահակալներից շուրջ մեկ քառորդի անունները սկսվում էին նույն այդ բառով (ևս 3 էլ պարունակում էին այն) և հավանաբար, տարբերիչ է ընկալվել անվան հենց երկրորդ մասը:

Սակայն, եթե խնդրո առարկա դրվագի գործող անձերից մեկը հիշատակվել է իր իսկական անվամբ, *մեծ հավանականությամբ* նույն կարգի պատմականություն ունեցել է *նույն աղբյուրից* հայտնի նաև երկրորդ անձը, և հիշատակվել է նույնպես իր պատմական անվամբ: Հետևապես, Հայկ Նահապետը կարող է համարվել պատմական դեմք: Ինչպես նաև իրական կարելի է համարել ժամանակագրության *ընդհանուր մասշտաբը, որից էլ ելնելով* նույնացվում է դրվագի գործող անձերից մեկը:

Սպանե՞լ է արդյոք Հայկը Աշուր-բել-կալային: Աշուր-բել-կալան *Ուրուատրի (Հայք)* է արշավել իր գահակալման հենց սկզբում, իսկ հետո կրկին արշավել է *Ուրուատրիի* դեմ երկու տարի անց և պատերազմել է, հավանաբար, Վանա լճի շրջակայքում (ինչը նույնպես համընկնում է Խորենացու հաղորդածի հետ), քանի որ ուրուատրական ցեղերը ձգտում էին ասորեստանցիներին դուրս մղել այդ տարածքներից[12]: Համենայն դեպս այդ երկրորդ արշավանքից հետո նա դեռ շուրջ 15 տարի գահակալել է, այնպես որ այդ երկրորդ արշավանքը եթե նույնիսկ անհաջող եղած լիներ իր համար՝ կործանարար չի եղել: Իհարկե, չի կարելի բացառել, որ նա ևս մի արշավանք է կատարել Հայք, որի ընթացքում և զոհվել է, թեև այդ մասին մեզ ոչինչ հայտնի չէ սեպագիր աղբյուրներից: Փաստ է միայն, որ Աշուր-բել-կալայից հետո Ասորեստանը ծայրաստիճան թուլացել է, և նա փաստորեն, այսպես կոչված Միջին Ասորեստանյան թագավորության վերջին քիչ թե շատ հզոր թագավորն էր: Նրա մահից հետո՝ մ.թ.ա. 1056-ից սկսած, Ասորեստանի համար խառը տարիներ էին: Այդ ժամանակաշրջանից մեզ գրեթե ոչինչ չի հասել՝ մինչեւ մ.թ.ա. 911 թվականը, երբ գահ բարձրացավ Ադադ-նիրարի Բ-ը, որից հետո թագավորությունն ընդունված է անվանել Նոր Ասորեստանյան: Այնպես որ Խորենացու աղբյուր

[10] **Grayson A. K.,** 1976.

[11] **Burney C.,** 2004, 215:

[12] **Садаев Д. Ч.,** 1979, 69. **Дьяконов И. М.,** 1951, № 2, 282:

պատմիչների համար, ովքեր նկարագրել են այդ դեպքերը շուրջ վեց դար հետո, իրողությունը կարող էր պատկերացվել որպես պատերազմ հյուսի-սային երկրի՝ Ուրուատրիի դեմ, որից հետո Ասորեստանը գրեթե կործան-վում է՝ թագավորը մահանում է:

Այժմ, *«քանզի ոչ է պատմութիւն ճշմարիտ առանց ժամանակագրու-թեան»,* սկզբունքով փորձենք կազմել ժամանակագրական աղյուսակ: Ստորեւ ներկայացված աղյուսակում ներառված են նաեւ Ուրարտական դարաշրջանի ավարտական տարիների ժամանակագրական վերական-գնումները[13]: Թավով տրված են ճշտված տարեթվերը, շեղով՝ գահակալ-ների նույնացումները: Ալիքով (˜) նշված են պայմանական տարեթվերը: Որպես Հայկի առաջին տարեթիվը՝ 1073-ը *պայմանականորեն* ընտրված է Աշուր-բել-կալայի գահակալման հաջորդ տարին:

| **Սեպագրեր** | | | **Խորենացի** |
|---|---|---|---|
| | 1073 — 1020 | ˜53 | *Հայկ* |
| | 1020 — 990 | ˜30 | Արամանյակ |
| | 990 — 960 | ˜30 | Արամայիս |
| | 960 — 930 | ˜30 | Ամասիա |
| | 930 — 900 | ˜30 | Գեղամ |
| | 900 — 859 | ˜41 | Հարմա |
| *Արամու* | 859 — 844 | 25 | *Արամ* |
| Սարդուրի Ա | 844 — 828 | 22 | |
| Իշպուինի | 828 — 810 | 18 | |
| Մենուա | 810 — 786 | 24 | |
| *Արգիշտի Ա* | 786 — 764 | 22 | *Արա Գեղեցիկ* |
| Սարդուրի Բ | 764 — 735 | 29 | |
| Ռուսա Ա | 735 — 714 | 21 | |
| *Արգիշտի Բ* | 714 — 685 | 29 | *Արա Արայան* |

| **Ասորեստան** | |
|---|---|
| Աշուր-*Բէլ*-կալա | 1074 — 1057 |
| Էրիբա-Ադադ Բ | 1057 — 1055 |
| Շամշի-Ադադ Դ | 1055 — 1050 |
| Աշուր-նածիր-ապլի Ա | 1050 — 1032 |
| Շուլմանու-աշարեդու Բ | 1031 — 1020 |
| Աշուր-նինարի Դ | 1020 — 1016 |
| Աշուր-րաբի Բ | 1016 — 973 |
| Աշուր-րեշ-իշի Բ | 973 — 967 |
| Թուկուլտի-ապիլ-էշառա Բ (Թկլատպալասար Բ) | 967 — 935 |
| Աշուր-դան Բ | 934 — 912 |
| Ադադ-նիրարի Բ | 911 — 891 |
| Թուկլուտի-Նիուրտա Բ | 891 — 883 |
| Աշուր-նածիր-ապլի Բ | 883 — 859 |
| Շուլմանու-աշարեդու Գ (Սալմանասար Գ) | 858 — 824 |
| Շամշի-Ադադ Ե | 823 — 811 |
| Ադադ-նիրարի Գ | 810 — 783 |
| Շամուրամաթ, փոխիշխանուհի | 810 — 805 |
| Շուլմանու-աշարեդու Դ | 783 — 772 |
| Աշուր-դան Գ | 772 — 755 |
| Աշուր-նիրարի Ե | 754 — 745 |
| Թուկուլտի-ապիլ-էշառա Գ (Թկլատպալասար Գ) | 744 — 727 |
| Շուլմանու-աշարեդու Ե | 727 — 722 |
| Շարու-կին Բ (Սարգոն Բ) | 722 — 705 |

[13] **Հակոբյան Ռ,** 1992, Հմ. 5, 78–81:

| | | | |
|---|---|---|---|
| Ռուսա Բ | 685 — 639 | 46 | |
| Սարդուրի Գ | 639 — 625 | 14 | |
| Սարդուրի Դ | 625 — 620<br>625 — **612** | 5<br>(**13**) | |
| *Էրիմենա* | 620 — 605<br>**612** — **597** | 15<br>(**15**) | *Պարույր* |
| *Ռուսա Գ* | 605 — 595<br>**597** — **561** | 10<br>(**36**) | *Հրաչյա* |
| Ռուսա Դ | 595 — 585<br>**561** — **560** | 10<br>(**1**) | Երվանդ Սակավակյաց |
| | 560 — 535 | 25 | Տիգրան Երվանդյան |

| | |
|---|---|
| Սին-ախե-էրիբա (Սենեքերիմ) | 705 — 681 |
| Աշուր-ախա-իդին (Ասարխադոն) | 681 — 669 |
| Աշուր-բան-ապլի (Աշուրբանիպալ) | 669 — ˜ 627 |
| Աշուր-էտիլ-իլանի | 627 — ˜ 623 |
| Սին-շումու-լիշիր | 623 |
| Սին-շար-իշկուն | 623 — ˜ 612 |
| Աշուր-ուբալիտ Բ ˜ | 612 — ˜ 609 |

| **Մարաստան** | |
|---|---|
| Կիակսարես | 625 — 585 |
| Աժդահակ | 585 — 550 |

| **Պարսկաստան** | |
|---|---|
| Կյուրոս Բ Մեծ | 559 — 530 |

Այսպիսով, Հայկ նահապետի տարիները հաջողվում է իմանալ այս դարաշրջանի համար ընդունելի ճշտությամբ: Բերված աղյուսակը մի փորձ է ցույց տալու, որ առկա փաստերից բխում է ներքուստ հետևողական ժամանակագրություն:

Շարունակենք վերլուծությունը: Պատմագիտության մեջ այսօր համարվում է, որ մինչև Արամու ուրարտական միասնական պետություն չկար, այլ կային միայն ցեղային միություններ: Սակայն, պետք է նկատել, որ նման եզրակացությանը հանգում են ոչ թե որոշակի փաստերի վրա, այլ հակառակը՝ սեպագիր տեղեկությունների բացակայությունից ելնելով: Այլ տեղեկությունների բացակայության դեպքում նման եզրահանգումը կարելի էր լիովին ընդունելի համարել: Բայց վերոբերյալ դատողություններից կարելի է և այլ ենթադրույթ առաջարկել. այն է, որ միասնական պետությունը կազմավորվել է ոչ թե Արամուի օրոք, այլ նրանից մոտ երկու դար առաջ: Եւ իրոք, ըստ սեպագիր նյութերի, Արամուն ներկայանում է որպես ինչ-որ հարստության վերջին ներկայացուցիչը[14], քանի որ հաջորդ հայտնի թագավոր Սարդուրի Ա-ը նրա որդին չէ, այլ ոմն Լուտիպրիի, որի մասին մենք ոչինչ չգիտենք: Հազիվ թե Արամուն իր հարստության միակ ներկայացուցիչը լիներ: Ավելի հավանական է, որ նրանից առաջ գահակալների մի ամբողջ հարստություն է եղել, որի հիմնադիրը կարող էր լինել հենց Հայկը:

Երբ մեզ արդեն հայտնի են Հայկի գահակալման մոտավոր տարիները, առաջ են գալիս *նախահայկյան* Հայքի հետ կապված խնդիրները: Եւ ամենակարևորը. եղե՞լ է արդյոք Հայկից առաջ հայկական միասնական պետություն: Հավանաբար՝ ոչ. իզուր չէ, որ Հայկը ընկալվել է ազգի հիմնադիր: Սակայն եթե չի եղել միասնական պետություն, դեռևս չի նշանա-

[14] Պետք է նկատել, որ Խորենացու արքայացանկի Արամը նույնպես հատուկ դիրք ունի. նրանով ավարտվում է հայոց նահապետների ցուցակը. «*... ասացեալ ազգաբանութիւնդ հաւաստի է, երեցունց ցեղիցն մետասան զոլով ցԱբրահամ եւ ցՆինոս եւ ցմերն Արամ*»:

կում, թե տարածաշրջանում չի եղել հայկական պետականություն: Թերևս եղել է այն փոքր իշխանությունների տեսքով, որոնց մասին հաղորդում են այդ ժամանակաշրջանի գրավոր աղբյուրները, և որոնք համադաշնություն էին կազմում՝ ընդհանուր թշնամիներին դիմակայելու համար:

Դրանցից առավել խոշորների կամ դրանց համադաշնությունների ղեկավարները կարող էին այնքան երևելի գտնվել, որ իրենց մասին տեղեկությունները կպահպանվեին: Իսկ, քանի որ Հայկը, հավանաբար, լինելով առավել անվանի և ծանրակշիռ առաջնորդը, ընկալվել է, որպես ազգի հիմնադիր, բոլոր մնացածը արքայացանկում պիտի որ հայտնվեին Հայկից հետո՝ նույնիսկ եթե ապրած լինեին Հայկից առաջ: Այդպիսի դեմքերից կարող է լինել *Զարմայրը*[15], որը հաստատապես ավելի վաղ շրջանի անձ է, քանի որ Խորենացին նրան հստակորեն կապում է Տրոյական պատերազմի ժամանակների, այսինքն մոտավորապես՝ մ.թ.ա. ԺԲ դարի առաջին կեսի հետ[16], որն այսպիսով Հայկի դարաշրջանից վաղ է ավելի քան մեկ դարով՝ և համապատասխանում է ուշ Խեթական դարաշրջանին:

Այդ ժամանակաշրջանում մեզ հայտնի է Հայասա պետական միությունը, որի անունը մեծ հավանականությամբ կարող է կապված լինել «հայ» անվան հետ[17]: Հայասայի *մեզ հայտնի* թագավորներից վերջինը՝ Աննիաս ապրել է մ.թ.ա. 1340–1310 թվականներին, և մենք չենք կարող Զարմայրին համեմատել նրանցից որևէ մեկի հետ:

Եւս մի այդպիսի անուն է, օրինակ, Զարմայրին նախորդած *Կար*-ը, որը նման է Հայասայի թագավոր *Կարանիսի* անվանը, թեև պետք է հիշել, որ այդ անվան ընթերցման հարցում կասկածներ կան[18]:

Այսպիսով, առաջարկված ենթադրույթի շրջանակներում հաջողվում է ոչ միայն թվագրել Հայկ Նահապետի դարաշրջանը, այլեւ որոշ դրվագներ նկատել նաև նախահայկյան Հայքի պատմությունից:

---

[15] Նեմիրովսկին անվավեր է համարում Զարմայրի հատվածը, քանի որ նրա անունը կապվում է Կտեսիասի գրքերից հայտնի Տեւտամոսի հետ, իսկ Կտեսիասին, սովորաբար, անվստահելի աղբյուր են համարում: Սակայն անկախ նրանից, թե որքան արժանահավատ են Կտեսիասի գրվածքները, պետք է նկատել, որ Զարմայրը դրանցում չի հիշատակվում: Տրամաբանական է ենթադրել, որ այդ անձը և նրա՝ Տրոյական պատերազմին մասնակից լինելը Խորենացուն կամ Մար Աբասին հայտնի է եղել այլ աղբյուրներից:

[16] **Немировский А. А.,** 2003, Vol. III, 3–18. **Baikouzis C., Magnasco M. O.,** www.pnas.org/cgi/doi/10.1073/pnas.0803317105

[17] **Մարտիրոսյան Հրաչ,** 2013, 5, http://armscoop.com/wp-content/uploads/2013/08/00E_DAS_kiraknorya_11.08.13.pdf

[18] **Дьяконов И. М.,** 1968, 213.

## ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ

**Իշխանյան Ռ.**, – 1988, Հայ ժողովրդի ծագման ու հնագույն պատմության հարցեր, 1988:
**Կարագեոզեան Յ.,** – 1998, Հայկական լեռնաշխարհը սեպագիր աղբիւրներում. Սեպագիր տեղանուններ, Հ. 1, Գիրք1, Ե., 1998:
**Հակոբյան Ռ.,** – 1992, Հրաչյա, որդի Արամի, «Գարուն», Հ№ 5, Ե., 1992:
**Յակոբեան Ա.,** Հայ էթնոսի կազմաւորման ժամանակը եւ պատմա-մշակութային առանձնայատկութիւնները,
http://digilib.am/digilib/?menu=&wrk=1575&wrpg=0&aupg=0
**Մարտիրոսյան Հրաչ,** – 2013, Հայոց լեզվի պատմություն (կիրակնօրյա առցանց դասընթաց), 2013, էջ 5,
http://armscoop.com/wp-content/uploads/2013/08/00E_DAS_ kiraknorya_11.08.13.pdf
**Дьяконов И. М.,** – 1951, Ассиро-вавилонские источники по истории Урарту, Вестник древней истории. 1951. № 2:
**Дьяконов И. М.,** – 1968, Предыстория армянского народа, Е., 1968.
**Немировский А. А.,** – 2003, Датировка Троянской войны в античной традиции: к легендарной хронологии «героического века» Эллады, «Studia historica». Volume III. Москва, 2003.
**Садаев Д. Ч.,** – 1979, История древней Ассирии, Москва, 1979.
А. Петросян, О происхождении армянского народа: проблема идентификации протоармян. http://rbedrosian.com/Classic/Petrosyan/Petrosyan_2009_ArmVest.pdf
**Åkerman K.,** – 1998, *The Prosopography of the Neo-Assyrian Empire,* 1998, *Volume 1, Part I: A* գրքում:
**Baikouzis C., Magnasco M. O.,** Is an eclipse described in the Odyssey? www.pnas.org/cgi/doi/10.1073/pnas.0803317105
**Burney C.,** – 2004, Historical of the Hittites, 2004.
**Grayson A. K.,** – 1976. Assyrian Royal Inscriptions II. Wiesbaden: Harrassowitz

**РУБЕН АКОПЯН (ТАРУМЯН)**

*post@tarumian.am*

# ПОПЫТКА ДАТИРОВКИ ЭПОХИ РОДОНАЧАЛЬНИКА АРМЯН HАЙКА

## РЕЗЮМЕ

В арменоведении распространено мнение, что родоначальники армян hАйк, Арам, Ара Прекрасный и другие, а также противник hАйка – Бел, о которых повествуется в Истории Армении Мовсеса Хоренаци, являются мифическими персонажами. Однако отдельными исследователями были предложены идентификации некоторых из этих персонажей с реальными историческими лицами, известными из клинописных источников. В частности, были попытки идентифицировать Арама с урартским Араму, Ара Прекрасного – с Аргишти I. Если такая идентификация верна, то при соблюдении общего хронологического масштаба изложения Хоренаци, родоначальник армян hАйк, будь он историческим персонажем, должен был бы жить в XI в. до н. э. Следовательно в том же веке должен был бы жить и реальный противник hАйка – Бел. В числе правителей Ассирии в XI в. до н. э. действительно был царь, притом единственный, в составе имени которого такой элемент был – Ашшур-Бел-Кала. Интересен также тот факт, что в описании деяний царя Бела у Хоренаци есть пассаж о том, что ему «выпала в то время удача *завладеть всей землей*», что по смыслу совпадает со значением этого асирийского имени «*Ашшур господин всего*». Таким образом можно предположить, что этот пассаж не что иное, как развёрнутое изложение перевода его имени, и что мы имеем дело не со случайным совпадением, и в книге Хоренаци речь идёт именно об этом царе. Но если Бел является реальной исторической личностью, то естественно полагать, что реальной исторической личностью был и hАйк.

**RUBEN AKOPYAN (TARUMYAN)**
*post@tarumian.am*

# ATTEMPYTS AT DATING THE ERA OF HAYK (HAIK), THE ANCESTOR OF THE ARMENIANS

## SUMMARY

In the Armenian Studies it is widely believed that the ancestors of the Armenians Hayk, Aram, Ara the Beautiful, and others, as well as the adversary of Hayk – Bel, which is narrated in the History of Armenia by Movses Khorenatsi, are mythical characters. However, some researchers have proposed the identification of some of these characters with real historical persons known from cuneiform sources. In particular, there have been attempts to identify Aram with the Urartian Aramu, Ara the Beautiful – with Argishti I. If these identifications are correct, subject to the overall presentation of the chronological scale of Khorenatsi, Armenian Hayk originator, whether a historical figure, would have to live in the XI century BC. Hence, the real adversary of Hike would have to live in the same century as well. Among the rulers of Assyria in the XI century BC really there was a king with Bel as part of his name – Ashur-Bel-Kala. It is also interesting that in the description of the acts of the king Bel at Khorenatsi, there is passage about the fact that he "fell while luck to take over all the land" though the value of the name "Ashur is lord of all." Thus we can assume that this passage is nothing more than a detailed presentation of the translation of his name, and that we are not dealing with a coincidence, and in the Khorenatsi book are talking about this king. But if Bel is a real historical figure, the historical figure was Hayk too.

ՎԱՀԱՆ ՏԵՐ-ՂԵՎՈՆԴՅԱՆ
*Պատմական գիտությունների թեկնածու*
*Մ. Մաշտոցի անվան հին ձեռագրերի գիտահետազոտական*
*ինստիտուտ –Մատենադարան*
*vterghevondian@gmail.com*

# ԿԻԼԻԿԻԱՅԻ ԵՎ ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ ԱՍՈՐԻՔԻ ՄԱՍՆԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ՋԱԼԱԼ ԱԼ-ԴԻՆԻ ԴԵՄ ԴԱՇԻՆՔԻՆ

XI-XIV դդ. դարերը (սելջուկյան և ապա մոնղոլական տիրապետության դարաշրջան) Մերձավոր Արևելքում նշանավորվում են շրջադարձային պահերով, որոնք բախտորոշ են տարածաշրջանի երկրների համար: Դրանք առաջին հերթին մի քանի վճռական ճակատամարտեր են, որոնք կշեռքի նժարը այս կամ այն կողմ թեքելով պայմանավորել են տեղի պետությունների ճակատագիրը հաջորդող մի քանի տասնամյակների համար: Դրանցից են 1071 թ. Մանազկերտի ճակատամարտը, երբ սելջուկները վճռական առավելություն ստացան բյուզանդացիների հանդեպ, կամ 1243-ի Քյոսե Դաղի (Չմանկատուկի) ճակատամարտը, երբ մոնղոլները ջախջախիչ հարված հասցնելով Իկոնիայի սելջուկներին, տեր ու տիրական դարձան Մեծ Հայքում, Փոքր Ասիայում ու հարևան երկրներում: Սակայն ոչ պակաս ուշադրության են արժանի այդ դարաշրջանի ևս մի քանի բախտորոշ ճակատամարտեր:

Խոսքը առաջին հերթին 1230 թ. Երզնկայի[1] (կամ Յասի Չիմենի) ճակատամարտի մասին է, երբ փոքրասիական սելջուկների ու Այյուբյանների միացյալ զինուժը վերջնականապես ջախջախեց շուրջ վեց տարի ողջ տարածաշրջանը ահ ու սարսափի մեջ պահող Ջալալ ալ-Դինի խորեզմյան բանակը: Վերջինիս հաղթանակի դեպքում առաջին հերթին նվաճման վտանգի առաջ էին կանգնելու Այյուբյանների տիրույթները Ջազիրայում (Վերին Միջագետք)՝ Մոսուլ կենտրոնով և Վանա լճի ավազանում՝ Խլաթ կենտրոնով:

Կարելի է ասել, որ գոյություն չուներ միասնական ու կենտրոնաձիգ

---

[1] Այս ճակատամարտը առավել հայտնի է Յասի Չիմենի ճակատամարտ անունով, որը մի գյուղ է Երզնկայի մոտակայքում: Մենք հետնել ենք ֆրանսիացի նշանավոր արևելագետ Ռընե Գրուսեին, որն այն կոչել է «Երզնկայի ճակատամարտ», տե՛ս **René Grousset,** 2006 (1936,1991), 382-383.

Այյուբյան պետություն: Դա փաստորեն մի շարք պետությունների "համադաշնություն" էր, որի մեջ հատկապես խոշոր միավորներ էին 3-4-ը, իսկ սրանց մեջ գերագահ էր համարվում Եգիպտոսի սուլթանը, թեև դա էլ երբեմն ձևական բնույթ էր կրում: Դամասկոսը, Հալեպը, Համան, Հոմսը, Մոսուլը կամ Խլաթը ուղիղ ձևով Եգիպտոսին չէին ենթարկվում, թեև այս բոլոր քաղաքներում իշխում էին Այյուբյան տոհմի տարբեր ներկայացուցիչները: Միաժամանակ այդ առանձին միավորները գտնվում էին գրեթե մշտական ներքին պայքարների մեջ:

Էլ ավելի բարդ էր Հյուսիսային Ասորիքի վիճակը 1216-1231 թվականներին, որի ինքնիշխան տիրակալը մինչ այդ Սալահ ալ-Դինի որդի ալ--Մալիք ալ-Զահիրն էր: Սկսած 1193-ից մինչև իր մահը նրան նույնիսկ հաճախ կոչում էին «սուլթան», իսկ երկիրը՝ «սուլթանություն»: Սակայն ալ--Մալիք ալ-Զահիրի  մահվանից (1216) հետո, երբ գահին բազմեց մանկահասակ որդին՝ալ-Ազիզը իրավիճակը փոխվեց: Ճիշտ է ալ-Ազիզի խնամակալը կամ աթաբեկը՝ Շիհաբ ալ-Դին Տուղրիլը իմաստուն կերպով կառավարում էր երկիրը (մինչև 1231 թ.), բայց և այնպես Հյուսիսային Ասորիքը գտնվում էր Մոսուլի հովանավորության տակ:

Այդ ընթացքում Հալեպը բավականաչափ անկախ էր ներքին և նույնիսկ որոշ չափով արտաքին հարցերում, բայց և այնպես այն գտնվում էր կրկնակի գերիշխանության տակ: Մեկը Եգիպտոսի սուլթանն էր, որի գերիշխանությունը հիմնականում բարոյական բնույթ էր կրում, իսկ մյուսը՝ Ջազիրայի ալ-Աշրաֆը, որի ազդեցությունն ավելի շոշափելի էր և որը մի տեսակ հովանավորի դեր էր ստանձնել Հալեպի հանդեպ:

Ահա այս բարդ «համադաշնության» հետ դիվանագիտական բնույթի նամակագրություն սկսեց Խորեզմշահերի թագաժառանգ Ջալալ ալ-Դինը, այն բանից հետո երբ մոնղոլներից հալածվելով իր բանակի հետ հայտնվեց արևմտյան Իրանում և նվաճեց Ատրպատականը, վերջ դնելով Ելտկուզյանների (Իլդեգիզյանների) ամիրությանը[2]:

1225-ին, երբ Ջալալ ալ-Դինը հայտնվեց տարածաշրջանի սահմանագլխին Այյուբյան եղբայրները, գրեթե ինչպես միշտ, գտնվում էին ներքին պայքարների ու մրցակցության մեջ: Ընդ որում ուժերի հարաբերակցությունն այսպիսին էր՝ Եգիպտոսին տիրում էր ալ-Քամիլը, Կենտրոնական ու Հարավային Ասորիքին՝ ալ-Մուազզամը (կենտրոն ունենալով Դամասկոսը) իսկ Ջազիրային (Վերին Միջագետք) և Վանա լճի ավազանին՝ ալ-Աշրաֆը: Սրանցից հատկապես վերջին երկուսի միջև լուրջ պայքար էր ընթանում:

1225 թվականին Ջալալ ալ-Դինի մոտ երկու անգամ պատվիրակություն եկավ ալ-Մուազզամից, որի արդյունքում կնքվեց դաշինք ընդդեմ ալ-

[2] Այստեղ տեղին է հիշել, որ դեռևս 1218 թվականին իր հայրը՝Խորեզմշահ Մուհամմադ իբն Թեքիշը, նամակով դիմել էր այդ ժամանակվա Եգիպտոսի Այյուբյան սուլթան ալ-Ադիլին օգնություն խնդրելով ընդդեմ մոնղոլների (Տե՛ս **Stephen Hemphreys,** 1977, 176).

Աշրաֆի: Նպատակը հստակ էր՝ ջախջախել Ջազիրայի ու Հայաստանի[3] տիրակալին: Ընդ որում այս դաշինքին մասնակցում էին նաև Իրբիլի տեր Արտուխյան Գյոքբորնին, որն ըստ նախատեսված պլանի պիտի հարձակվեր Մոսուլի վրա, ալ-Մուազզամը, որը պիտի գրավեր Հոմսն ու Համան, իսկ Ջալալ ալ-Դինը հարվածելու էր Խլաթին ու Վանա լճի ողջ ավազանին[4]:

Ջալալ ալ-Դինն ու իր նոր ձեռք բերած դաշնակիցները իրենց նվաճողական պլանների իրագործմանն անցան շուրջ մեկուկես տարի անց միայն, քանի որ 1225-1226 թվականներին խորեզմցին ամբողջովին զբաղված էր Վրացական պետության դեմ արշավանքներով ու ասպատակություններով: Այդ ընթացքում նա Գառնիի (1225) բախտորոշ ճակատամարտում հաղթանակ տարավ և 1226-ի սկզբին գրավեց մայրաքաղաք Թբիլիսին, այդ ընթացքում նաև ավարառության ենթարկելով Վրաստանի և Հյուսիսային Հայաստանի բազմաթիվ բնակավայրեր[5]:

1226 թ. նոյեմբերին Ջալալ ալ-Դինը անսպասելի հայտնվեց Խլաթի մոտ: Նրանք գրոհեցին Խլաթի պարիսպների վրա ու թեև շուտով ներխուժեցին քաղաք, բայց այնքան տարված էին կողոպուտով, որ բնակչությունն ու կայազորը ի վերջո դուրս շպրտեցին նրանց: Այս անգամ արդեն Ջալալ ալ-Դինը կանոնավոր պաշարման ենթարկեց քաղաքը, սակայն սաստիկ ցուրտն ու Ատրպատականից ստացած տագնապալի լուրերը ստիպեցին նրան հեռանալ Խլաթից[6]:

Դրանից հետո շուրջ երկու տարի (1226-ի վերջից մինչև 1228-ի երկրորդ կեսը) Ջալալ ալ-Դինը գտնվում էր Իրանում և Իրաքում, ուստի Այյուբյանների տիրույթները հարավ-արևմտյան Հայաստանում (որոնց նրանք տիրացել էին 1207-ին) մնացին անձեռնմխելի:

Շուտով Դամասկոսի տեր ալ-Մուազզամը հիվանդացավ ու մահացավ 47 տարեկան հասակում: Դրանով իսկ Ջալալ ալ-Դինը տարածաշրջանում կորցրեց իր գլխավոր դաշնակցին:

1228 թվականի երկրորդ կեսին Ջալալ ալ-Դինը կրկին անսպասելի հայտնվեց տարածաշրջանում: Նա բավական հաջող պատերազմ էր մղել մոնղոլների դեմ Իրանում, որի պսակը իր հաղթանակն էր Իսֆահանում: Ահա այնտեղից նա արշավեց ուղիղ դեպի Խլաթի գավառը՝ ամայացնելով այն: Դրանով նա կարծես վրեժ լուծեց իր նախկին անհաջողության համար, ապա կրկին վերադարձավ Ատրպատական: 1229 թվականին խո-

[3] Այդպես էին արաբական աղբյուրներն անվանում Վանա լճի ավազանը, կամ Մեծ Հայքի հարավ-արևմտյան մասը (Վ.Տ.-Ղ.):

[4] **Stephen Hemphreys,** 176-178.

[5] **Մարգարյան Հ.,** 1981, 125-139:

[6] Նույն տեղում:

րեզմցիները դարձան Այյուբյանների գլխավոր մտահոգությունը արտաքին հարաբերություններում[7]:

Թեև ժամանակակիցներն ու պատմագիրները Ջալալ ալ-Դինին համարում են մի բախտախնդիր[8], իսկ նրա բոլոր արշավանքները բնորոշում որպես կողոպտչական, սակայն հանուն ճշմարտության պետք է նշել, որ 1225-1230 թվականներին գրեթե ողջ Իրանն ու Վրացական թագավորությունը (Հյուսիսային Հայաստանի հետ միասին) գտնվում էին Ջալալ ալ-Դինի տիրապետության տակ: Խլաթի երկրորդ պաշարումից հետո (1229) ակնհայտ էր, որ նույն ճակատագիրն է սպասում Հարավ-արևմտյան Հայաստանին, Ջազիրային, Ասորիքին (Այյուբյան տիրույթներ), Փոքր Ասիային (Իկոնիայի սելջուկյան սուլթանություն), ինչպես նաև Կիլիկիայի հայկական թագավորությանն ու խաչակրաց տիրույթներին:

1229թ. օգոստոսի վերջին Ջալալ ալ-Դինը անսպասելի հայտնվեց Խլաթի պարիսպների տակ իր հետ բերելով պաշարողական մեքենաներ: Խլաթի գրավումը այս անգամ ևս շատ դժվար խնդիր դարձավ նրա համար: Քաղաքը դիմացավ գրեթե 10 ամիս: Խլաթցիները դիմադրեցին աներևակայելի քաջությամբ ու տոկունությամբ, բայց ի վերջո, 1230 թ. ապրիլի 14-ին խորեզմցիները գրոհեցին պարիսպների վրա և մի աշտարակից կարողացան ներխուժել քաղաք: Սկսվեց կոտորածն ու կողոպուտը: Կայազորի մնացորդները փախան միջնաբերդ, բայց երկար դիմադրել չկարողացան:

Փաստորեն 1230 թ. գարնանը Ջալալ ալ-Դինը արդեն ի վիճակի էր կատարելու նոր լայնածավալ նվաճումներ: Իրավիճակը ստիպեց տարածաշրջանի պետություններին սթափվելու և կտրուկ քայլերի դիմելու մի կողմ դնելով նախկինում եղած հակասությունները: Խլաթի անկումը Այյուբյաններից ոչ պակաս անհանգստացրել էր Իկոնիայի սուլթան Քայ Կուբադին, որը որոշեց հարթել իր բոլոր հակասությունները Այյուբյանների հետ: Նա անմիջապես բանագնացներ ուղարկեց ալ-Քամիլի և ալ-Աշրաֆի մոտ, որի արդյունքում մի դաշինք գոյացավ նրանց միջև: Եգիպտոսի սուլթանը ալ-Աշրաֆին նշանակեց բոլոր Այյուբյան զորքերի հրամանատար[9]:

Ալ-Աշրաֆը սկզբում իր հետ ուներ ընդամենը 700 զինվոր: Նրան միացան Հալեպի, Հոմսի, Համայի, Դիյար Մուդարի և Մոսուլի ուժերը: Ի

---

[7] Ռընե Գրուսեն վկայակոչելով լատին պատմիչների տեղեկությունները եզրակացնում է, որ Ջալալ ալ-Դինի հրոսակների ներխուժման վտանգը այնքան մեծ էր, որ երկու Այյուբյան եղբայրները՝ ալ-Քամիլը և ալ-Աշրաֆը դիմեցին անգամ Ֆրիդրիխ II կայսրի օգնությանը: (Տե՛ս **R. Grousset**, 382)

[8] Առաջին հերթին այն պատճառով, որ նա թեև ուներ շատ մարտունակ մի բանակ, բայց կորցրել էր իր երկիրն ու պետությունը, հետևաբար ավելի նման էր թափառական ավազակի, քան մի մեծ պետության ղեկավարի, որը նվաճումներով ընդարձակում է իր տիրապետությունը: (Վ.Տ.-Ղ.)

[9] **Stephen Hemphreys,** 217-218.

վերջո նաև Բանյասի ու Մայյաֆարիկինի ուժերի միանալով զորքը հասավ 5000-ի: Խառռանի մոտ բանակ կազմելով ալ-Աշրաֆը Եփրատի հովտով գնաց դեպի Սեբաստիա, որտեղ միացավ Քայ Կուբադի 20000-անոց հեծելազորին:[10]

Երբ Ջալալ ալ-Դինը լսեց իր դեմ ստեղծված զինակցության մասին նա դուրս եկավ Խլաթից փորձելով հարվածել սելջուկներին նախքան նրանց միանալը ալ-Աշրաֆի հետ: Բայց Խարբերդի մոտ նա անսպասելի հիվանդացավ ու թեև մի քանի օրից ստիպեց իրեն շարունակել առաջխաղացումը, բայց արդեն պահը կորցրել էր: 1230 թ. օգոստոս 7 -ին Խարբերդից Երզնկա ուղղվելով Ջալալ ալ-Դինը դեմ հանդիման դուրս եկավ սելջուկների 6000-անոց[11] մի զորաբանակի: Վերջիններս հանկարծակիի գալով այդ օրը ջախջախիչ պարտություն կրեցին: Բայց սա ընդամենը նախերգանքն էր:

1230 օգոստոս 9 –ին, Երզնկայից ոչ հեռու, Յասի-Չիմեն գյուղի մոտ Ջալալ ալ-Դինը հանդիպեց դաշնակիցների հիմնական ուժերին: Եթե հավաստի է Բար Հեբրեոսի հիշատակած թիվը, ապա Ջալալ ալ-Դինն ուներ թվական գերազանցություն՝ 40 հազարն[12] ընդդեմ 25 հազարի: Նրա առաջապահները ուժեղ հարձակման ենթարկվեցին սելջուկ-այյուբյան բանակի կազմում կռվող բեդուինների կողմից: Հաջորդ օրը խորեզմցիները քիչ էր մնում գրավեին այն բլուրը, որի վրա դաշնակիցները տեղավորել էին իրենց ուժերը, բայց հանկարծ ինչ որ մի քամի մեծ փոշի առաջացրեց, որի հետևանքով նրանք միմյանց տեսադաշտից անհետացան: Ըստ երևույթին Ջալալ ալ-Դինի հիվանդ լինելը ևս ինչ որ դեր խաղաց: Ի վերջո խորեզմցիներն սկսեցին նահանջել: Ապա նահանջը վերածվեց փախուստի և Այյուբյանների ու սելջուկների հեծելազորը նետվեց նրանց հետևից վերջնականապես ջախջախելով հակառակորդին: Ջալալ ալ-Դինը մի կերպ փրկվեց փախչելով Խլաթ, ապա հասնելով մինչև Խոյ[13]:

Երզնկայի ճակատամարտի մասին հիշատակող արաբական[14] և ասորական[15] աղբյուրներից և ոչ մեկը չի հիշատակում հայերի և ֆրանկների մասնակցության մասին: Ուստի բացառիկ են 13-րդ դարի երկու հայ հեղինակների տեղեկությունները: Այդ մասին է վկայում Կիրակոս Գանձակեցին իր «Հայոց Պատմության» մեջ, ինչպես նաև 13-րդ դարի Անանուն Սեբաստացի տարեգիրը իր «Ժամանակագրության» մեջ:

---

[10] Նույն տեղում:
[11] Ըստ Բար Հեբրեոսի սելջուկների թիվը 4000 էր: Bar Hebraeus, 1976, 395.
[12] Նույն տեղում:
[13] **Stephen Hemphreys**, 219.
[14] **Шихаб ад-Дин Мухаммад ан-Насави**, 1973, 256-257, **Ibn al-Athir**, 2003, 486-487, տես նաև **Իբն ալ-Ասիր**, 1981, 339-340:
[15] **Bar Hebraeus**, 395.

Պատմիչների մեծամասնությունը նշում է, որ դաշնակիցների բանակը շուրջ 25.000 էր, որը հիմնականում բաղկացած էր Իկոնիայի սելջուկների 20 հազարանոց բանակից[16]:

Համաձայն Կիրակոս Գանձակեցու հաղորդման, Երզնկայի ճակատամարտին բացի սելջուկներից ու Այյուբյաններից մասնակցել են նաև հայերն ու խաչակիրները: Նկարագրելով Խլաթի պաշարումն ու գրավումը խորեզմցիների կողմից, պատմիչը հիշատակում է երեք սուլթանների՝ Քամիլ և Աշրաֆ Այյուբյանների և Իկոնիայի Քայ Կուբադի զինակցությունն ընդդեմ Ջալալ ալ-Դինի, ապա ավելացնում է. «Կոչեցին իւրեանց օգնական և ի զօրացն հայոց, որ յաշխարհին Կիլիկեցւոց, և ի ֆռանկացն ծովեզերեայց, և եկին տալ պատերազմ ընդ խորազմեցւոյն Ջալալադնի»[17]: Ապա նկարագրում է Երզնկայի ճակատամարտը հետևյալ կերպ. «Եւ իբրեւ եկին մօտ առ միմեանս, զանգիտեցին երկոքին կողմանքն և ոչ իշխէին խառնիլ ընդ իրեարս: Ապա քրիստոնեայքն, որ ի հայոց և ֆռանկաց, խրախուսեալք յԱստուած, դիմեցին ի վերայ նոցա: Եւ էին թուով սակաւք, պակաս քան զհազար մի, և զօրութեամբն Քրիստոսի հարին զզօրսն և ի փախուստ դարձուցին: Եւ զայն տեսեալ զօրացն տաճկաց՝ յարձակեցան և նոքա. և հարին կոտորեցին զբազումս մինչ ի մուտս արևուն: Ապա հրաման ետուն սուլտանքն ոչ պնդել զհետ փախստէիցն, իբր այն՝ թէ հաւատակիցք նոցա իցեն: Եւ դադարեցին ի պնդելոյ զհետ նոցա: Իսկ սուլտանքն, զի արք բարեպաշտք էին, ոչ ապերախտ լինէին առ զօրն քրիստոնէից, զի գիտացին, թէ ի ձեռն նոցա ետ տէր զյաղթութիւնն»[18]:

Բացի Կիրակոս Գանձակեցուց նման տեղեկություն գտնում ենք նաև նրա ժամանակակից Անանուն Սեբաստացու տարեգրության (XIII դ.) մեջ[19]:

«…Իսկ սուլտանն դառնայ ի Թավրէզ: Ջկնի տարո մի գա ի Գագ և ի Տփխիս և զքրիստոնայքն զոր կոտորեաց և զոր ի հաւատոց հանէին: Ջնոյն ի Գանձակ և ի Նախչւան առնէին: Եւ ապայ երթայ ի վերայ Ալատին սուլտանին Հոռոմոց, աւերէ զբազում գաւառս: Իսկ սուլտանն փախուցանէ զնայ և նայ զնայ ի Մուղան: Ալատինն և Աշրափն և Քէմիլ, եղբայր իւր, կոչեն յաւգնութիւն ի զօրուն Հայոց և ի Կիլիկեայ և ի ֆռանկաց. և փախուցանէն զնայ մինչև ի Մուղան. և Թաթարն փախուցանէ զնայ մինչև յԱմիթ և ոմանք ասեն սպանել ի Թաթարէն, և այլք, թէ հետիոտս փաղչէր և ճանաչեալ զնա ոմն եսպան. և խնդրեցաւ վրէժ արեան մանկանց անմեղաց»[20]:

Չի բացառվում, որ այս Անանուն ժամանակագիրը իր տեղեկությունը քաղած լինի հենց Կիրակոս Գանձակեցու երկից: Առաջին հայացքից

[16] **ан-Насави,** 256-257.
[17] **Կիրակոս Գանձակեցի**, 228-229:
[18] Նույն տեղում, 229-230:
[19] Տե՛ս Մանր ժամանակագրություններ, 1956, 118-172:
[20] Նույն տեղում, 138:

տպավորություն է ստեղծվում, որ այստեղ հավելյալ տեղեկություն կա՝ բացի կիլիկեցի հայերից ևս ինչ որ «Հայոց զորքի» մասին: Սակայն ուշադիր ընթերցումը ցույց է տալիս, որ մեծ հավանականությամբ գործ ունենք գրչական սխալի հետ, ավելորդ մի «և» կա (որի դիրքը ևս անտրամաբանական է), որը հանելով ստանում ենք՝ «ի զօրուն Հայոց ի Կիլիկեայ և ի ֆռանկաց»: Սա առավել հավանական է, եթե նկատի ունենանք, որ Անանուն Սեբաստացու տեքստը ընդհանուր առմամբ անփույթ է գրված:

Կիլիկիայի պատմության վաստակաշատ ուսումնասիրող Գրիգոր Միքայելյանը իր աշխատության մեջ լիովին հենվում է Կիրակոս Գանձակեցու տեղեկության վրա. «Բայց 1230 թ. Աշրաֆը, իր եղբայր Քամիլը և Իկոնիայի սուլթան Ալա ադ-Դին Քեյ Կուբադը միավորվելով օգնության կանչեցին նաև ծովեզրյա ֆրանկներին և Կիլիկիայի հայկական զորքը և Խլաթի մոտ տեղի ունեցած եռօրյա ճակատամարտում ջախջախեցին Ջելալ էդ-Դինին»[21]: Միքայելյանը չի փորձում այլ աղբյուրներով հաստատել հայերի ու ֆրանկների մասնակցության հավաստիությունը, ինչպես նաև կոալիցիայի մեջ մտնելու դրդապատճառները, զինվորների թիվը, ովքե՞ր էին նրանց հրամանատարներն ու վերջապես ի՞նչ ենք հասկանում ասելով «ծովեզրյա ֆրանկներ»: Նշենք նաև, որ ճակատամարտը տեղի ունեցավ ոչ թե Խլաթի, այլ Երզնկայի մոտ:

Քլոդ Մութաֆյանը նույնպես անդրադառնում է այս ճակատամարտին, ընդ որում, բացի Կիրակոս Գանձակեցուց նա հղում է նաև Անանուն Սեբաստացու «Ժամանակագրությունը» այն դնելով շրջանառության մեջ[22]:

Հույն պատմաբան Ալեքսիս Սավվիդիսը, նույն ճակատամարտի մասին գրելուց հետո, ավելացնում է. «Քայկուբադ I-ը դիվանագիտական հաղթանակ տարավ ընդունելով ալ-Քամիլի և ալ-Աշրաֆի օգնության առաջարկը, քանի որ հաղթանակի դեպքում նա կկարողանար իր պայմանները թելադրել Փոքր Ասիայի ապագա ստատուս քվոյի հարցերում: Կիլիկյան թագավոր Հեթում Ա-ը նույնպես ստիպված էր Կոնիային մատակարարել ֆրանկոհայկական մի զորամիավորում»:[23]

Փորձենք պարզել, թե Երզնկայի ճակատամարտին կիլիկեցիների մասնակցությունը որքանով էր հավանական և որքանով էր թելադրված հայոց թագավորության մինչ այդ վարած արտաքին քաղաքականությամբ:

Հայտնի է, որ Կիլիկյան Հայաստանը Իկոնիայի սելջուկյան սուլթանության հանդեպ 1216-ից հետո ուներ որոշակի վասալական պարտավորություններ: Դա տեղի ունեցավ այն բանից հետո, երբ Լևոն Ա թագավորը,

---

[21] **Микаэлян Г.,** 1952, 296. Մոտավորապես նույն միտքը կրկնվում է նաև Հայ ժողովրդի պատմության (ՀՀ ԳԱ բազմահատորյակ) 3-րդ հատորի (Երևան, 1976) 605 էջում (հեղ. Բաբայան Լ.):

[22] **Moutafian C.,** 2012, 127-128.

[23] **Alexis G. C. Savvides,** 1981, 181.

որն իր գահակալության նախորդ տարիներին միայն հաղթանակներ էր տարել, իր սիրելի սպարապետ Կոստանդինին սելջուկյան գերությունից ազատելու համար թե տարածքային զիջումներ կատարեց և թե ընդունեց Իկոնիայի սուլթանի գերակայությունը, որն ըստ երևույթին ենթադրում էր նաև ռազմական ուժ տրամադրելու պարտավորություն:

Երեք տարի անց՝ 1219-ին, նման առիթ ներկայացավ, ըստ Միքայել Ասորու «Ժամանակագրության» հայերեն տարբերակի շարունակողի: Երբ սուլթան Քեյքաուսը արշավանքի դուրս եկավ ընդդեմ Հալեպի Այյուբյանների (Մոսուլի հովանավորության տակ գտնվող) նա օգնական ուժեր ստացավ Հայոց թագավորից: Ըստ աղբյուրի՝ սելջուկները մի շարք բնակավայրեր գրավեցին Այյուբյաններից և արդեն սպառնում էին մայրաքաղաք Հալեպին: Հենց այդ ժամանակ Հալեպի աթաբեկ Շիհաբ ալ-Դին Տուղրիլը օգնության համար նամակ է ուղարկում Լևոն թագավորին: Վերջինս հարևան պետությանն օգնելու նպատակով դիմում է խորամանկության: Նա իր հերթին նամակով Իկոնիայի սուլթանին հաղորդում է, որ իբրև թե տվյալներ ունի սուլթանության ներսում ձևավորված դավադրության մասին: Այս լուրն առնելով, սելջուկները վերադառնում են Իկոնիա՝ թողնելով նախապես գրավված բնակավայրերը: Դրանով իսկ ոչ միայն Հալեպը փրկվեց սելջուկյան հարձակումից, այլև ալ-Աշրաֆը ետ խլեց մինչ այդ կորցրած բնակավայրերը[24]:

Փաստորեն, եթե մինչև 1216 թ. Հայոց թագավորության և Հալեպի Այյուբյանների միջև կային բավական լարված հարաբերություններ, որոնց գագաթնակետը 1203-1206 թվականների պատերազմն էր, ապա 1216-ից հետո բոլորովին այլ իրավիճակ է ստեղծվում: Այդ տարիներին Հալեպի սուլթան ալ-Մալիք ալ-Զահիրի մահը, Լևոն Մեծագործի վերջին երեք տարիների թուլությունն ու կորուստները, Իկոնիայի սուլթանության աննախադեպ հզորացումը և Անտիոք-Տրիպոլիսի կոմսության հարձակողական պահվածքը հարևանների հանդեպ, Սսին ու Հալեպին դարձնում էին բնական դաշնակիցներ:

Ինչպես արդեն վերևում նշվեց Այյուբյան տոհմի ավագ ներկայացուցիչների և առաջին հերթին Ջազիրայի տեր Մալիք ալ-Աշրաֆի հովանավորությունը չէր վերացնում Հալեպի ինքնիշխանությունը: Ինչպես նշում է արևելագետ Անն-Մարի Էդդեն, այն թույլ էր տալիս Հալեպի ամիրությանը պահպանելու եթե ոչ լիարժեք անկախությունը, բայց առնվազն ինքնավարությունն ու բարգավաճելու հնարավորությունը[25]: Համենայն դեպս Հալեպի աթաբեկը այնքան ինքնուրույնություն ուներ, որ կարող էր մի այլ (այն էլ քրիստոնյա) պետության միապետին դիմել օգնության խնդրանքով: Հատկանշական է, որ աթաբեկը դիմում է մի պետության, որի զինվորները

[24] Տեառն Միխայէլի պատրիարքի ասորւոց ժամանակագրութիւն, 1870, 520-522: Տես նաև **Վահան Տեր-Ղևոնդյան,** 2010, 45-55:

[25] **Anne-Marie Eddé,** 1999, 89.

(թեկուզ և ստիպողաբար) միացել են իրենց թշնամու բանակին: Ավելին, դա մի պետություն էր, որի հետ մինչ այդ եղել էին հիմնականում թշնամական հարաբերություններ: Մյուս կողմից աչք է զարնում Լևոն թագավորի արագ և համարձակ արձագանքը, որով նա մեծ ծառայություն է մատուցում երեկվա հակառակորդին: Այս ամենը ցույց է տալիս, թե որքան շատ բան էր փոխվել տարածաշրջանում և որ ժամանակի թելադրանքն էր զինակցությունը Կիլիկիայի և Հյուսիսային Ասորիքի Այյուբյանների միջև:

Այդ զինակցության մի նոր փաստ արձանագրվեց 1226-ին[26], որի համառոտ նախապատմությունը հետևյալն է: Այն բանից հետո, երբ Զաբելի հետ ամուսնանալով Հայոց թագավոր հռչակված Ֆիլիպին (1222-1224) Կիլիկիայի վերնախավը մեկուսացրեց ու բանտարկեց, ռազմական բախում տեղի ունեցավ Հայոց թագավորության և Անտիոք-Տրիպոլիսի կոմսության միջև: Ֆիլիպի հայրը՝ Բոհեմունդ IV-ը, իր նպատակին չհասնելով, փորձեց հակակիլիկյան պետությունների մի դաշինք ստեղծել՝ հայոց դեմ գրգռելով Իկոնիայի սուլթանությանը: Վերջիններս 1225-1226-ի ձմռանը ներխուժեցին Կիլիկիա, գրավեցին չորս ամրոց, բայց ձյան ու ցրտի պատճառով՝ վերադարձան իրենց երկիրը:

Ահա այստեղ է, որ կրկին գործեց Սիս-Հալեպ զինակցությունը, որի մասին պերճախոս կերպով վկայում է Իբն ալ-Ասիրը. «Հայերը լուր ուղարկեցին Հալեպի աթաբեկ Շիհաբ ալ-Դինին՝ օգնության կանչելով և զգուշացնելով, որ վատ կլինի, եթե բրինսը գրավի իրենց երկիրը, քանի որ Հալեպի գավառներին դրացի է»[27]: Աթաբեկը անմիջապես «զորք ու զենք» ուղարկեց հարևան հայկական պետությանը: Դրանից հետո թեև Բոհեմունդը անձամբ արշավեց Կիլիկիայի վրա, բայց ձախողվեց ու նահանջեց: Փաստորեն Հալեպի օգնությունը վճռական նշանակություն ունեցավ Բոհեմունդին վերջնականապես ետ մղելու և թշնամական շրջափակումից դուրս գալու գործում[28]: Հավանական է, որ հալեպցիներին առանձնապես համոզելու կարիք էլ չկար, քանի որ նրանք գիտակցում էին կիլիկեցիների հետ ունեցած շահերի ընդհանրությունը: Չի բացառվում նաև, որ 1226-ին Հալեպի Այյուբյանների ցուցաբերած աջակցությունը կիլիկեցիներին փոխհատուցումն էր 1219-ին Լևոն թագավորի մատուցած ծառայության:

Իկոնիայի սելջուկներին օգնական զորք տրամադրելու պարտավորությունը, որի մասին պայմանավորվածություն կար 1216-ից, գործել է ընդամենը մեկ անգամ 1219-ին, այն էլ փաստորեն՝ ոչ լիարժեք: Ավելին, ինչպես տեսանք, ի վերջո այն ստացավ հակասելջուկյան բնույթ: Այդ պարտավորության նշաններ այլևս չեն երևում ոչ 1226-ին, ոչ էլ դրանից հետո՝ մինչև 1230-ը: Ուստի որևէ հիմք չկա Երզնկայի ճակատամարտին հայերի մասնակցությունը բացատրել Իկոնիայի սելջուկների հանդեպ

[26] Տե՛ս **Իբն ալ-Ասիր**, 333, **Վ. Տեր-Ղևոնդյան**, 1994, 131-133:

[27] **Ibn al-Athir**, 469-470, **Իբն ալ-Ասիր**, 333:

[28] **Ibn al-Athir**, 470.

վասալական պարտավորությամբ: Իսկ եթե կիլիկեցիները արձագանքել են երկու հիմնական ուժերից (սելջուկներ և Այյուբյաններ) որևէ մեկի կոչին՝ («կոչեցին իւրեանց օգնական») կամ առաջարկին, ապա դա մեծ հավանականությամբ Այյուբյաններն էին:

Իբն ալ-Ասիրը Երզնկայի ճակատամարտում հաղթանակի գործում կարևոր դեր է վերապահում Այյուբյանների զինուժին, թեև այն քառակի զիջում էր սելջուկներին: Այդ մասին նա գրում է «…իսկ Աշրաֆի հետ կար մոտավորապես հինգ հազար [զինվոր], սակայն ընտիր, քաջ ու պատերազմներում կոփված զորքեր էին, լավ զինված ու արաբական կրակոտ նժույգներով: Նրանց հրամանատարն էր Հալեբի զորքերի ամիրներից մեկը, որը կոչվում էր Իզզ ալ-Դին Օմար իբն Ալի, որը Հաքքարի քրդերից էր և վերին աստիճանի քաջարի, ընտիր հատկություններով ու ազնիվ բարքի տեր»[29]:

Այն, որ անկախ իրենց թվից հենց Այյուբյաններն էին խորեզմցիների դեմ հիմնական կռվողները, հաստատում է նաև ասորի պատմիչ Բար Հեբրեոսը՝ ճակատամարտի նկարագրությունից հետո նշելով, որ «… և Մալիք Աշրաֆը հաղթական էր» (չի գրում «Քայ Կուբադը հաղթական էր»)[30]:

Կիրակոս Գանձակեցին հայերի ու ֆրանկների թվի մասին գրում է. «Եւ էին թուով սակաւք, պակաս քան զհազար մի»: Սա ենթադրել է տալիս, որ նրանց թիվը միասնաբար հավանաբար հասնում էր մոտ 800-900-ի: Հավանական է, որ 25000-անոց բանակի մեջ 800-900 զինվորը կարող էր նկատի չառնվել ժամանակի պատմագիրների կողմից, մանավանդ եթե որևէ միապետ, կամ նշանավոր իշխան նրանց չէր առաջնորդում:

Կիլիկեցիների հնարավոր մասնակցությունը քննելիս ավելորդ չէ նկատել, որ Երզնկայի (Յասի Չիմենի) ճակատամարտի ժամանակ թեև Կիլիկիայի թագավորն էր Հեթում Ա-ը, սակայն իրականում երկրի ղեկավարն էր նրա հայրը՝ Կոստանդին Պայլը: Լ. Տեր-Պետրոսյանը նշում է «Սկսած 1221 թվականից, երբ Կոստանդինն ստանձնեց Զապել թագուհու խնամակալությունը, մինչև 1236 թվականը, այն է՝ Հեթում թագավորի չափահաս դառնալու ժամանակը, նա, ըստ էության, Հայոց թագավորության միահեծան տերն էր…»[31]:

Միաժամանակ, թեև խորեզմցիների դեմ պայքարը Այյուբյանների կողմից ղեկավարում էր ալ-Աշրաֆը, սակայն Հալեպում մինչև 1231-ը փաստացի ղեկավարն էր աթաբեկ Շիհաբ ալ-Դին Տուղրիլը, Կոստանդին Պայլի գործակիցը 1226-ին, որը 1230-ին ևս կարող էր որոշակի դեր խաղալ Ջալալ ալ-Դինի դեմ կոալիցիայի մեջ կիլիկեցիներին ներգրավելու հարցում:

---

[29] **Իբն ալ-Ասիր,** 340:

[30] **Bar Hebraeus,** 395.

[31] **Տեր-Պետրոսյան Լ.,** 2007, 286:

Այսպիսով, 1216-ից հետո Սիս-Հալեպ հարաբերություններում (անուղղակիորեն նաև Սիս-Մոսուլ հարաբերություններում) տիրապետող է դառնում համագործակցությունն ու զինակցությունը: Վերջինիս վկայությունն են պատմիչների հաղորդումները 1219-ի և 1226-ի իրադարձությունների մասին: Այս շարքին կարելի է ավելացնել նաև 1230-ի Երզնկայի ճակատամարտը:

Այսպիսով ուրվագծվում է հետևյալ պատկերը: Երզնկայի ճակատամարտում թվական մեծ գերազանցություն ունեին Ռումի սելջուկները, սակայն բուն ռազմական գործողություններում վճռական դեր են ունեցել Այյուբյանները:

Ամենայն հավանականությամբ հայերի մասնակցությունը որևէ ձևով կապված չէ Իկոնիայի սուլթանի հանդեպ տարիներ առաջ ստանձնած պարտավորությունների հետ և նրանց մասնակցությունը ինքնիշխան որոշում է եղել և ավելի շուտ թելադրված ընդհանուր թշնամու դեմ միավորվելու և արհավիրքը Կիլիկիայից հեռացնելու գիտակցությամբ: Բացի այդ, ըստ երևույթին, քրիստոնյաները մաս են կազմել Այյուբյան միացյալ զորաբանակի:

Հայերին ընդգրկելու գործում դեր են խաղացել երկու խնամակալների՝ Հալեպի աթաբեկ Շիհաբ ալ-Դինի և Կիլիկիայի Կոստանդին Պայլի վաղեմի կապերն ու բարեկամությունը: Հայկական (նաև ֆրանկ) ուժերը կռվել են հենց Այյուբյան (հավանաբար Հալեպի) զորաբանակի կազմում: Արաբ պատմիչ Իբն ալ-Ասիրը թեև չի հիշատակում քրիստոնյաների մասնակցության մասին, սակայն եթե մեր վերոհիշյալ ենթադրությունը (որ քրիստոնյաները ներառված էին Հալեպի Այյուբյանների զորաբանակում) ճիշտ է, Իբն ալ-Ասիրի հաղորդումը չի հակասում Կիրակոս Գանձակեցու տեղեկությանը: XIII դարի արաբ պատմիչը նկարագրելով Երզնկայի ճակատամարտը, գրում է «Ճակատամարտն սկսեց Իզզ ալ-Դին Օմար իբն Ալին՝ Հալեբի զորքի գլուխն անցած: Ջալալ ալ-Դինը չկարողացավ դիմադրել կամ դիմանալ, այլ փախուստի դիմեցին ինքը և իր զորքը»[32]: Եթե համարենք, որ նախահարձակ եղած Հալեպի զորքի կազմում էին նաև քրիստոնյաները, ապա դա համընկնում է Կիրակոս Գանձակեցու տեղեկության հետ: Մյուս կողմից իհարկե վերապահությամբ պետք է ընդունել և ակնհայտ չափազանցություն համարել, երբ հայ պատմիչը հաղթանակի դափնիներն ամբողջությամբ վերագրում է հայերին ու ֆրանկներին:

Լուսաբանման կարիք ունի նաև ֆրանկների մասին հիշատակությունը, որոնք Կիրակոս Գանձակեցու և Անանուն Սեբաստացու մոտ մշտապես հիշատակվում են հայերի հետ միասնաբար. «Եւ էին թուով սակաւք, պակաս քան զհազար մի»[33] արտահայտությունը ևս հուշում է, որ սրանք մեկ միասնական զորամիավոր են եղել և չեն շեշտում, թե դրա հատկա-

---

[32] **Ibn al-Athir,** 487, տես նաև **Իբն ալ-Ասիր**, 340:

[33] **Կիրակոս Գանձակեցի,** 229-230:

պես ո՞ր մասն էին կազմում հայերը և ո՞ր մասը խաչակիրները: Մնում է պարզել, թե հատկապես ո՞ր խաչակիրների մասին է խոսքը: Ալեքսիս Սավվիդիսի «Կիլիկյան թագավոր Հեթում Ա-ը նույնպես ստիպված էր Կոնիային մատակարարել ֆրանկոհայկական մի զորամիավորում»[34] արտահայտությունը այն տպավորությունն է ստեղծում, որ «ֆրանկ» զինվորներին ոչ թե ինչ որ մի խաչակիր պետություն էր տրամադրել, այլ դրանք արդեն իսկ Կիլիկյան Հայաստանի տարածքում հաստատված խաչակիր ռազմիկներ են: Եթե դա ճիշտ է, ապա մեծ հավանականությամբ դա կարող էին լինել հոգևոր-ասպետական միաբանությունների անդամներ: Ինչպես հայտնի է, 1230-ին արդեն իսկ Կիլիկիայում հաստատված էին բոլոր երեք միաբանությունները՝ Հիվանդախնամներ, Տաճարականներ և Տևտոններ: Հաշվի առնելով որոշ հանգամանքներ կարելի է ենթադրել, որ Երզնկայի ճակատամարտին հայերի հետ կարող էին մասնակցել Հիվանդախնամներ կամ Տևտոններ[35], հավանաբար հաշվի առնելով այն մեծ վտանգը, որ հաղթանակի դեպքում Ջալալ ալ-Դինը կարող էր սպառնալ Արևելյան Միջերկրականի քրիստոնյա պետություններին:

XIII դարի առաջին չորս տասնամյակները համարվում են Իկոնիայի սելջուկյան սուլթանության հզորագույն շրջանը: Հենց այդ շրջանում այս պետությունը մեծ ծաղկում ապրեց, միաժամանակ այս կամ այն չափով իր ազդեցությունը տարածելով ողջ Փոքր Ասիայի վրա: Սակայն այդ քառասնամյակի մեջ պետք է առանձնացնել վերջին տասներեք տարին (1230-1243), երբ Ռումի սուլթանությունը հասավ իր հզորության գագաթնակետին: Դրանք Ալա ալ-Դին Քայ Կուբադի գահակալության (1220-1237) վերջին ու Ղիյաս ալ-Դին Քայ Խոսրովի II-ի (1237-1246) առաջին տարիներն էին, երբ Ռումի սուլթանության ազդեցությունը տարածվեց Փոքր Ասիայից էլ դուրս, դեպի Ասորիք, Վերին Միջագետք, Մեծ Հայքի հարավ-արևմուտքը և Վրաստանի արևմտյան որոշ շրջանները: Սա պայմանավորված էր հենց Երզնկայի հաղթանակով:

Նշանավոր պատմաբան Կլոդ Կայենը գտնում է, որ խորեզմցիների արշավանքներից ու Յասի Չիմենի ճակատամարտից հետո Իկոնիայի սելջուկների գերիշխանությունը Փոքր Ասիայում առավել ակնհայտ դարձավ: Նրանց բացահայտ հավակնությունները նաև Հարավ-արևմտյան Հայաստանի և Ջազիրայի Այյուբյան տիրույթների հանդեպ ստիպեցին Այյուբյաններին կրկին միավորվել ընդդեմ երեկվա դաշնակցի[36]: Պատահական չէր նաև, որ Հեթում Ա-ի հատած երկլեզվյան՝ հայ-սելջուկյան դրամները վերաբերում են հենց այդ շրջանին: Հեթումը նման դրամներ է հատել իր և Ռումի երկու սուլթանների՝ Քայ Կուբադ I-ի (1220-1237) և նրա որդու՝ Քայ Խոսրով II-ի (1237-1246) անունով: Քայ Կուբադի օրոք հատված դրամ-

[34] **Alexis G. C.Savvides,** 181.
[35] **Մարի-Աննա Շեվալիե,** 2007, 66-67:
[36] **Claude Cahen,** 1940, 645.

ներում թվականը նշված չէ, սակայն կարելի է մեծ հավանականությամբ նշել, որ դրանք վերաբերում են Քայ Կուբադի վերջին տարիներին՝ 1233-1237 (ամեն պարագայում 1230-ից հետո), իսկ Քայ Խոսրովի հետ համատեղ դրամները ընդգրկում են վերջինիս գահակալության ողջ շրջանը (1237-1246)[37]:

Ակնհայտ է որ, Երզնկայի ճակատամարտը դրական նշանակություն ուներ նաև Կիլիկիայի համար, քանի որ Ջալալ ալ-Դինի հրոսակների ներխուժումը Հայոց թագավորություն մի իսկական աղետ կլիներ իր ծաղկուն շրջանը ապրող Կիլիկիայի համար: Մյուս կողմից պարզ էր, որ խորեզմցիների ահարկու բանակի ջախջախումից հետո, չունենալով լուրջ մրցակից, Իկոնիայի սելջուկյան սուլթանությունը փորձելու էր իր գերիշխանությունը տարածել դեպի արևելք ու հարավ: Ստեղծված իրավիճակում Հեթում Ա-ը չէր կարող բացահայտ առճակատման գնալ և պետք է ողջամիտ համարել նրա կողմից Իկոնիայի գերիշխանության ժամանակավոր ընդունումը: Միաժամանակ ակնհայտ է, որ առաջին իսկ հարմար առիթի դեպքում կիլիկեցիները փորձելու էին թոթափել վասալական կախվածությունը Իկոնիայից, մի բան որ մեծապես պայմանավորեց Հայոց թագավորության դիրքորոշումը հետագայում՝ մոնղոլների և սելջուկների միջև Չմանկատուկի 1243-ի ճակատամարտում և դրան հաջորդած եռանդուն դիվանագիտական քայլերը հայ-մոնղոլական դաշինք հաստատելու ուղղությամբ:

1230 թ. ճակատամարտին հայերի և խաչակիրների մասնակցությունը հաստատող այլ աղբյուրներ (բացի Կիրակոս Գանձակեցու և Անանուն Սեբաստացու գործերից) առայժմ չեն հայտնաբերված, բայց Հայոց թագավորության նախորդ տարիների (1216-1230) արտաքին քաղաքականության ուսումնասիրումն ու տարածաշրջանում ձևավորված ուժերի հարաբերակցության վերլուծությունը գալիս է հաստատելու հայ պատմիչների վերոհիշյալ հաղորդումները:

Կիլիկյան Հայաստանի համար Երզնկայի ճակատամարտի նշանակությունն ու Ջալալ ալ-Դինի բանակի վերջնական ջախջախմանը հայ զինվորների մասնակցության բացահայտումը կարևոր նշանակություն ունեն Հայոց թագավորության արտաքին հարաբերությունների պատկերը վեր հանելու առումով: Առավել ևս, որ Հեթում Ա-ի երկարատև գահակալման առաջին շրջանի (1226-1243) վերաբերյալ տեղեկությունները սակավ են, մի բան, որ ստիպում է հետազոտողին եղած բոլոր աղբյուրների հաղորդումներից առավելագույնը քաղելով լույս սփռել Կիլիկիայի ավելի քան մեկուկես տասնամյակի արտաքին քաղաքականության վրա:

[37] **Nercessian Y.T.**, 1995, 126-127.

## ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ

**Կիրակոս Գանձակեցի,** – 1961,Պատմութիւն Հայոց, Երևան, 1961
Մանր ժամանակագրություններ, XIII-XVIII դդ., հ. II, կազմեց Վազգեն Հակոբյան, Երևան, 1956:
**Մարգարյան Հ.,** – 1981, Ջալալ ադ-Դինի Հայաստան և Վրաստան կատարած արշավանքի պատմության շուրջ, Պատմաբանասիրական հանդես, Երևան, 1981:
**Շևալիե Մարի-Աննա,** – 2007, Կիլիկյան Հայաստանի և հոգևորասպետական միաբանությունների փոխհարաբերությունների պատմությունից, Երևան, 2007:
Տեառն Միխայէլի պատրիարքի ասորւոց ժամանակագրութիւն, Երուսաղէմ, 1870:
**Տեր-Ղևոնդյան Վ.,** – 1994, Կիլիկյան Հայաստանը և Մերձավոր Արևելքի արաբական երկրները 1145-1226 թթ., Երևան, 1994:
**Տեր-Ղևոնդյան Վահան,** – 2010, Կիլիկիայի հայկական թագավորությունն ու Հալեպի սուլթանությունը՝ դաշնակիցներ, Հայոց պատմության հարցեր, 11, Երևան, 2010:
**Տեր-Պետրոսյան Լ.,** – 2007, Խաչակիրները եւ հայերը, հ. Բ, Երեւան, 2007:
Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, Իբն ալ-Ասիր, Երևան, 1981:
**Микаэлян Г.,** – 1952, История Киликийского армянского государства, Ереван, 1952.
**Шихаб ад-Дин Мухаммад ан-Насави,** – 1973, Жизнеописание султана Джалал ад-Дина Манкбурны, пер.с арабск. З. М. Буниятова, Баку, 1973.
**Alexis G. C.Savvides,** – 1981, Byzantium in the Near East:Its relations with the Seljuk sultanate of Rum in Asia Minor, the Armenians of Cilicia and the Mongols A.D. c.1192-1237, Thesalonics, 1981.
**Anne-Marie Eddé,** – 1999, La principauté Ayyoubide d'Alep (579/1183 – 658/1260), Stuttgart, 1999.
**Claude Cahen,** – 1940, La Syrie du Nord a l'epoque des croisades et la principaute franque d'Antioche, Paris, 1940.
**Hebraeus Bar,** – 1976, The Chronography of Gregory Abu'l-Faraj Bar Hebraeus, eng.tr.Ernert A.Wallis Budge, Amsterdam, 1976.
**Ibn al-Athir,** – 2003, Al-Kamil fi l-Tarikh, t. X, Beirut, 2003.
**Moutafian C.,** – 2012, L'Armenie du Levant, t. I, Paris, 2012.
**Nercessian Y.T.,** – 1995, Armenian coins and their values, Los Angeles, 1995.
**René Grousset,** – 2006, Histoire des Croisades et royaume franc de Jerusalem, v.III, 2006 (1936,1991).
**Stephen Hemphreys,** – 1977, From Saladin to the Mongols, The Ayyubids of Damascus,1193-1260, New York, 1977.

**ВААН ТЕР-ГЕВОНДЯН**
*Кандидат исторических наук*
*Институт древних рукописей Матенадаран имени*
*св. Месропа Маштоца*
*vterghevondian@gmail.com*

# УЧАСТИЕ КИЛИКИИ И СЕВЕРНОЙ СИРИИ В КОАЛИЦИИ ПРОТИВ ДЖАЛАЛ АЛ-ДИНА

## РЕЗЮМЕ

Возникновение и развитие государства в Киликии примерно совпадает с эпохой владычества сельджуков и монголов на Ближнем Востоке (XI-XIV вв.). За этот период произошло несколько судьбоносных сражений регионалного значения, каждое из которых предопределило далнейшую судьбу местных государств на несколько десятилетий вперед.

К числу таких сражений можно отнести битву 1230 г. при Ерзинка (Йаси - Чименскую битву), во время которой обьединенные вооруженные силы местных государств разгромили хорезмскую армию Джалал ал-Дина, державшую в страхе весь регион в течение шести лет.

Безусловно, в победе при Ерзинка основную роль сыграло Иконийское сельджукское государство и различные воинские подразделения (из Дамаска, Алеппо, Хомса, Хамы, Дийар Мудара, Банйаса, Майяфарикина) Аййубидской “конфедерации”.

Арабские и сирийские историки (Ибн ал-Асир, Ал-Насави, Бар Эбрей и др.), передающие сведения об этом сражении и о составе коалиции против хорезмского принца, упоминают лишь сельджуков и Аййубидов. Однако, армянский историк Киракос Гандзакеци (“История Армении”) и летописец Аноним Севастийский (“Летопись”) сообщают также об участии армян и франков в сражении в рядах коалиции. Правда, они отмечают, что число армян и франков вместе взятых не достигало и 1000-и человек (при общей численности войска в 25.000). И тем не менее, сам факт участия важен для выявления нюансов внешней политики Киликийского царства в годы, о которых сохранилось мало сведений.

Поскольку дополнительные источники, подтверждающие сведения вышеупомянутых армянских авторов пока не найдены, была сделана попытка проверить насколько эти сведения соответствовали политике и межгосударственным взаимоотношениям предыдущей эпохи. Исследование внешней

политики Армянского царства, а также анализ баланса сил установившихся в регионе в 1216-1230 гг., полностью подтверждают правдоподобность сведений армянских источников.

После смерти Салах ал-Дина (1193г.) Аййубидский султанат был поделен на части между его сыновьями и братом. Северная Сирия с центром в Алеппо перешла к одному из его сыновей – ал-Малик ал-Захиру, который правил как суверенный правитель и даже величался “султаном”. При его правлении взаимоотношения с Киликийской Арменией были напряженные, а иногда и вражеские (война 1203-1206 гг.). Однако многое изменилось в 1216 году. Скончался ал-Малик ал-Захир, правителем стал его малолетний сын, находящийся под опекой регента (атабека) – Шихаб ал-Дин Тугрила, а сам Алеппский эмират перешел под покровительство Аййубидских правителей Мосула. В то же время некоторый спад, наметившийся в последние годы правления Левона I (1216-1219) в Киликии совпал с беспрецедентным усилением Иконийского султаната и подчеркнуто агрессивным поведением графства Антиохии -Триполи. Все эти изменения в регионе сделали Сис и Алеппо естественными союзниками.

Свидетельством о взаимопомощи (войском, оружием или дипломатией) между Армянским царством и Алеппским эмиратом являются следующие события: в 1219 г. армяне поддерживают Алеппских и Мосульских Аййубидов в их борьбе против Иконийского султаната (источник: Продолжатель Михаила Сирийца). Алеппо же, в свою очередь, в 1226 г. помогает Армянскому царству в его борьбе против графства Антиохии-Триполи и того же Иконийского султаната (источник: Ибн ал-Асир).

Вероятнее всего, участие армян в коалиционных силах в битве против Джалал ал-Дина является продолжением того же сотрудничества. Сопоставление сообщений историков показывает, что воины-христиане участвовали в битве при Ерзинка по всей вероятности в составе Аййубидских формирований. Последние уступали по численности сельджукской армии в четыре раза, но именно они сыграли решающую роль в разгроме огромной армии хорезмийцев.

Вхождению киликийцев в состав коалиции мог способствовать и человеческий фактор. Дело в том, что в 1230 г. фактическими правителями Северной Сирии и Киликии были регенты Шихаб ал-Дин Тугрил и Константин Байл, которые уже имели опыт налаживания сотрудничества между этими странами.

Очевидно, что битва при Ерзинка в 1230 г. имела положительное значение для Киликии, так как вторжение орд Джалал ал-Дина в процветающее армянское царство стало бы настоящей катастрофой. С другой стороны было ясно, что после разгрома могущественных хорезмийцев, Иконийский султанат, не имея серьезных противников, постарается расширить зону своего влияния на восток и на юг. В создавшейся ситуации армянский царь Хетум I в 30-ые и в начале 40-ых гг.13-го века не мог пойти на прямую конфронтацию и счел целесообразным временно принять главенство иконийских султанов. В то же

время киликийцы были готовы использовать любой шанс, чтобы избавиться от всякой зависимости от Иконии. Именно этим во многом обьясняется позиция Армянского царства в 1243 г. во время битвы при Чиманкатуке и последующие энергичные шаги армянской политической элиты за установление прочных союзнических отношений с монголами.

**VAHAN TER-GHEVONDIAN**
*Ph.D in History*
*The Mesrop Mashtots Institute of Ancient Manuscripts-Matenadaran*
*vterghevondian@gmail.com*

# THE INVOLVEMENT OF CILICIA AND NORTHERN SYRIA IN THE COALITION AGAINST DJALAL AL-DIN

## SUMMARY

The creation and development of the Armenian state in Cilicia approximately coincides with the epoch of Seldjuk and Mongol domination in the Middle East (XI-XIV cc.). During that period a number of decisive battles took place each of them defining the fate of local states for some decades.

The Yerzinka (or Yasi Chimen ) battle of 1230 can be considered as one of those decisive fights, where the united forces of the local states defeated the Khorezm army of Djalal al-Din. The latter was keeping in terror the whole region for about six years.

There were two leading forces in the battle of Yerzinka: the Seldjuk sultanate of Iconium and the united forces (Damascus, Aleppo, Homs, Hama, Diyar Mudar, Banyas, Mayyafarikin) of the Ayyubid "confederation".

The Arab and Syriac historians (Ibn al-Athir, al-Nasawi, Bar Hebraeus et c.) reporting about this battle provide information only on seldjuks and the Ayyubids as members of the coalition. In that sense the reports of Armenian historians of 13$^{th}$ c. Kirakos Gandzakeci (History of Armenia) and Anonimus of Sebaste (Chronicle) are exceptional. They inform about participation of Armenians and Franks together with the Muslim contingents in the coalition. Though they precise that the number of Armenians and Franks was less than 1000 (in an army of 25.000 soldiers), all the same the fact of participation is important to reveal the nuances of the foreign policy of the Kingdom of Cilicia, especially in a period of time when there are few reports.

We haven't yet found additional evidences confirming the statements of above-mentioned Armenian authors. At the same time a thorough research of the foreign policy of Armenian kingdom and the analysis of the power balance in the region in 1216-1230 demonstrates the credibility of their reports.

Following the death of sultan Salah al-Din (1193) his empire was divided among his sons and his brother. The Northern Syria, with a center in Aleppo, became the possession of his son al-Malik al-Dhahir. He governed as a sovereign

ruler and sometimes was called “sultan”. During his governance the relations with Cilician Armenia were tense and even hostile for some years (the war of 1203-1206). But the conditions were completely changed in 1216. After al-Malik al-Dhahir passed away, his infant son came to the power under the tutelage of a regent (atabek) – Shihab al-Din Tughril. Meanwhile the Aleppo emirate itself came under the patronage of Ayyubide rulers of Mosul. In the same period, through the last years of Levon I (1216-1219) certain weakening became apparent in Cilicia, which coincided with an unprecedented strengthening of the sultanate of Iconium and an aggressive behavior of the County of Antiochia-Tripoli. All these changes that took place in the region eventually made Sis and Aleppo natural allies.

One can find at least two eloquent evidences of mutual assistance (with soldiers, weapons or diplomacy) between the Armenian kingdom and the Aleppo emirate. In 1219 Armenians helped the Ayyubids of Aleppo and Mosul confronting the sultanate of Iconium (source: Continuer of Michael the Syrian) while in 1226 it was the turn of Aleppo to help the Armenian kingdom in its struggle against the County of Antiochia-Tripoli and the sultanate of Iconium (source: Ibn al-Athir).

Most probably the battle against the army of Djalal al-Din was another occasion to continue the established cooperation between the two countries. The comparison of the reports of historical sources makes us to think that the Christian soldiers participated in the Yerzinka battle together with the contingents of the Ayyubid army. The latter was four times smaller than the Seldjuks’, however it played a decisive role in defeating the huge army of Khorezm. Personal relationship also could contribute to the involvement of the Cilician Armenians in the coalition: in 1230 the *de facto* rulers of both Northern Syria and Cilicia were the regents – Shihab al-Din Tughril and Constantin Bayl, who had already played a role in the establishment of previous alliances and had preserved personal contacts.

Obviously the result of Yerzinka battle in 1230 had a positive impact on Cilicia, as the invasion of the hordes of Djalal al-Din into the flourishing kingdom of Cilicia could be a disaster. On the other hand after the defeat of the khorezmian army the sultanate of Iconium got rid of serious adversaries and started to extend its influence towards east and south. Under the new circumstances Armenian king Hethum I had to avoid the direct confrontation with the powerful sultanate in 30ees and early 40ees of $13^{th}$ c. and temporarily recognize the supremacy of the sultans of Iconium. At the same time the Cilician Armenians were ready to use any opportunity to get rid of dependency from the northern neighbor. To a large extent it explains the position of the Armenian kingdom towards the battle of Chimankatuk in 1243 and subsequent dynamic efforts of Armenian political elite for the sake of establishing a durable alliance with the Mongols.

ԳԱՅԱՆԵ ԱՅՎԱԶՅԱՆ
*Պատմական գիտությունների թեկնածու*
*Մ. Մաշտոցի անվան հին ձեռագրերի գիտահետազոտական*
*ինստիտուտ –Մատենադարան*
*forgayane@gmail.com*

# ԵՐԵՄԻԱ ՉԵԼԵՊԻ ՔՅՈՄՈՒՐՃՅԱՆԻ «ՕՐԱԳՐՈՒԹԻՒՆ», «ՏԱՐԵԳՐԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ» ԵՐԿԵՐԸ ԵՎ ՄԻՔԱՅԵԼ ՉԱՄՉՅԱՆԻ «ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ» ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆԸ
## (ԲՆԱԳՐԱԳԻՏԱԿԱՆ ՔՆՆՈՒԹՅՈՒՆ)

Հայ պատմագրական մտքի ականավոր ներկայացուցիչ Երեմիա Քյոմուրճյանի «Օրագրութիւն» և «Տարեգրական պատմութիւն» երկերը անգնահատելի աղբյուրագիտական նշանակություն ունեն XVII դարի ինչպես Կոստանդնուպոլսի հայ գաղթօջախի, այնպես էլ օսմանյան կայսրության պատմության վերագնահատման հարցում: «Տարեգրական պատմութիւն» երկը տակավին անտիպ է, ձեռագիրը պահվում է Վենետիկի Մխիթարյան միաբանությունում (ձեռ. հմր. 476): Գործի կառուցվածքի և ժամանակագրական ընդգրկման վերաբերյալ առաջարկված տարբերակները որոշ հակասություններ ունեն թե՛ մեկմեկու և թե՛ Պատմության բնագրի հետ[1]: Ձեռագրի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ Երեմիա Քյոմուրճյանը նպատակ է ունեցել գրելու օսմանյան պատմությունն առհասարակ, ավելի ստույգ՝ օսմանյան նվաճումների պատմությունը, կայսրության ձևավորման ընթացքը: Անգամ նախանշել է այն հիմնական ուղղությունները, որոնցով պետք է առաջնորդվի հետագա շարադրանքը գրելիս: Սակայն այդ ծրագիրը նա այդպես էլ չի իրագործել, և շարադրանքը կառուցիկ ու համակարգված է դառնում թեմատիկ և ժամանակագրական բոլորովին ուրիշ առանցքի շուրջ. թեմատիկ առումով «Տարեգրական պատմութիւն»-ը բաժանված է երեք հիմնական ուղղության՝ Կ. Պոլսում և մերձակայքում եղած իրդեհների պատմությունը, Կ. Պոլսի հայկական գաղթավայրի անցքերը, օսմանյան ներքին ու արտաքին կյանքի հարցերը: Շարադրանքի առանց-

[1] **Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեան,** 1913, հ. Ա, 185-186: **Զարպհանալեան Գ.**, 1878, հատ. Բ, 441-444: **Патканов К.**, 1897, 51. **Երեմեան Ս.**, 1902, թիւ 8, 367-369; թիւ 9-10, 473-479:

քային մասը սկսվում է հրդեհների նկարագրությամբ. ժամանակագրական ամենավաղ հիշատակությունը վերաբերում է 1565 թ. Կ. Պոլսում տեղի ունեցած հրդեհին, հրդեհների պատմությունը նա ավանդում է մինչև 1694 թ.՝ մահվանից մեկ տարի առաջ: Պատմական անցքերի շարադրման վերջին վկայված տարեթիվն է 1690-ը[2]:

Ապրո Չելեպիի Ավետարանի հիշատակարանում, որ հեղինակել է Երեմիա Քյոմուրճյանը, խնդրին աղերսվող մի հետաքրքիր վկայություն է պահպանվել.

«...Ունէի եւ ըղձայի ըստ **երկրորդ հատորն** (ընդգծումը-Գ.Ա.) յարմարման.

Մինն զՊատմութիւնս նարդենիս ի Հայումս զոր ինչ գործեցան.

Տեսի զի առականք են անցեալ իրք եւ քամահական

Որպէս ոմն որ զվատաշուէրս անգոսնէ յոյժ եպերական.

Արգելի թողի եւ զայն՝ զի չլինիցիմք մեք պարսաւական...

Թէ Աստուած լիցի ինձ հաշտ առնելոյ տեսլեան իւր արժան.

Ժըտեմ չթողուլ կարօտ, յաջողէ զայնս ի յաւարտման»[3]:

Ն. Ակինյանը «երկրորդ հատոր» ասվածը վերագրում է Տարեգրական պատմությանը: Երեմիա Քյոմուրճյանը «Տարեգրական պատմութիւն»-ը գրի է առել «Օրագրութիւն»-ը ավարտելուց շատ ավելի ուշ: Եթե Տարեգրությունը նա անվանում է «երկրորդ հատոր», ապա Օրագրությունը կոչում է «նախակարգեալ», այսինքն՝ նախընթաց պատմություն. «**Նախակարգեալ պատմութիւնս մեր՝** (ընդգծումը-Գ.Ա.) զոր սկսայ ի ծննդենէն Քրիստոսի թվականի ՌՉՃԽԸ, որ է թվական մեր ՌՂԷ»[4]: Մենք համեմատել ենք Օրագրության ամեն մի էջը Տարեգրական պատմության համապատասխան ժամանակաշրջանի դեպքերի հետ. կասկածից վեր է այս երկու գործի միջև սերտ կապը: Տարեգրությունը, սակայն, Օրագրության շարունակությունը չէ. Երեմիան իր «երկրորդ հատորը» չի շարունակել այն հատվածից, որտեղ դրել է Օրագրության վերջակետը: Չենք վարանի պնդել, որ «Օրագրութիւն»-ը Տարեգրության սկզբնաղբյուրներից ամենագլխավորն է: Ըստ էության, Քյոմուրճյանը վստահություն է տածել առավելապես իր՝ ավելի հասուն տարիքում արված գրառումներին: «Տարեգրական պատմութիւն»-ը հետևում է Օրագրությանը՝ սկսած 1652 շարունակական հաջորդականությամբ, սակայն, 1656-1657 թթ. մինչև 1662 թվականը: Հիմնական տարբերությունն այն է, որ «Տարեգրական պատմութիւն»-ը, բացառությամբ առանձին դեպքերի, պատմությունը ներկայացրել է համառոտակի, ինչի մասին վկայում է նաև հեղինակը. «Ես զայս համառօտ պատմեցի, թէ զինչ

---

[2] Տարեգրական պատմութիւն, թ. 251ա:

[3] **Ակինեան Ն.**, 1933, 93:

[4] Տարեգրական պատմութիւն, թ. 20ա: Օրագրությունը հիշատակված է նաև մեկ այլ տեղ. «Որպէս յառաջ քան զժամանակս պատմագրութեանս մերում զոր սկսայ ի ծննդենէն Քրիստոսի թվականի ի ՌՉՃԽԸ մինչև ցայս վայր...», նույնը, թ. 19բ:

կրեցին ազգս ողջոյն և առաւել զքարերարութեան աղանեռացն օճաղին շատ իմացիս»[5]: Երկու երկերի սերտ հարազատությունը ցուցող օրինակները բազմաթիվ են, սակայն մենք կներկայացնենք մի քանի հատված միայն

**Օրագրութիւն**

*Յաւուրքս (սեպտ. 30-ից հետո 1656- Գ.Ա.) վէզիրն էանց զՂարակեօզ քէհեա Մուրատ փաշային առաջի թագաւորին և հրամանաւ թագաւորին զնա սպանեաց[6]:*

*Օրս զմուֆտին փոխեցին և եղին տեղի նորա զՊալիզատէն:*

*Գշի օրս /11 Նոյ. 1656/ եկն էլչի դեսպան Պարսից արքայէն առ թագաւորն և եմուտ ի քաղաքս և ունէր փիղ մի ընդ իւր ընծայ եւ այլքն ի ծածուկ և գնաց ի սարայ Սալիհ փաշային: Գշիս/18 Նոյ. 1656/ օլօֆէն ելեալ, երեր էլչին զընծայս առ թագաւորն՝ ուղտ ԽԵ, փիղ մի և թուր մի և մի աղեղ, ՃԾ մսխալ մարգարիտ, Ծ մսխալ մոմեայի քեանի և մէկ քանի խալիչա ապրշմեղէն և այլ ատլասք և կերպասք, և խընդրեալ զՊաղտատայ կեօռխանէ իմամոցն. և թագաւորն ասացեալ թէ Գրաւ տվէք ինձ, զի ոչ հաւատամ ձեզ թէ նստիք խաղաղ. և դեսպանն ասացեալ թէ Ի՞նչ գրաւ ուզես. և թագաւորն ասացեալ թէ Զդուստր և զորդի Շահին ձեր. և նա լուռ լեալ ի դուրս հանեցին[8]:*

**Տարեգրական պատմութիւն**

*Եւ յաւարտ ամսոյ սեպտեմբերի համեալ վէզիր զկամս արքայի արգել յապարանս զՂարակեօզ տէֆթէրտարն և առեալ զհաշիւ նորա և սպան զնա[7]:*

*Ի մետասան նոյեմբերի արար մազուլ զհանիֆի էֆէնտի մուհտին եւ եդ ի տեղի նորա զՊալիզատէն: Յորում աւուրն եկն ըստ զալստեան դեսպանին պարսից արքային և մեծ դեսպան յարքայէն պարսից և նստուցին զնա ի դարպաս Սալիհ փաշայի պատուով եւ յետ աւուրց եմուտ առ վէզիրն մատուցանելով և զընծայս նմա եւ վէզիրն խիլայեաց զնա Ժ արամբք և պայման եառուն նոյեմբեր ԺԸ մտանել առ թագաւորն եւ եմուտ յաւուր որում զոռճիկս բաշխիւր ծառայիցն և մատոյց թագաւորին ֆիլ մի և ուղտս ԽԵ եւ թուր մի և աղեղ մի եւ ՃԾ մսխալ մարգարիտս պատուականս և Ծ մսխալ մոմեայի մատենի եւ խալիչայք ապրշմեղէնք և կերպասք և խնդրեալ զՊաղտատայ կեօռխանէ իմամոցն և թագաւորն ասէ Տուք ինձ գրաւ զդուստր և զորդի շահին ձերոյ և լուռ լեալ դեսպանին ել արտաքս[9]:*

Երկու երկի համադրությունը հանգեցնում է ժամանակագրական որոշ անհամապատասխանությունների բացահայտմանը, որը շատ մեծ չէ, ընդամենը՝ մեկ կամ մի քանի օրվա տարբերությամբ. Օրագրության մեջ Քյո-

[5] Տարեգրական պատմութիւն, թ. 157ա:

[6] Օրագրութիւն Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեանի, 1939, 210:

[7] Տարեգրական պատմութիւն, թ. 110ա:

[8] Օրագրութիւն, 214, 217:

[9] Տարեգրական պատմութիւն, թ. 110աբ:

մուրճյանը հազվադեպ է նշում ամսաթվերը, գլխավորապես հիմք է ընդունում շաբաթվա օրերը: Ձեռագիրը հրատարակության պատրաստելիս ամսաթվերը վերականգնել է Մ. Նշանյանը: Մեր հաշվումներով Մ. Նշանյանը չի սխալվել, տոմարական հաշվարկներում վրիպել է Երեմիա Քյոմուրճյանը՝ Օրագրության շաբաթվա օրերը նա փորձել է Տարեգրության մեջ վերածել ամսաթվերի և ոչ միշտ է կարողացել ճշգրտության հասնել:

| Օրագրութիւն | Տարեգրական պատմութիւն |
|---|---|
| *[1652] Բշ (երկուշաբթի-Գ.Ա.) (**26 ապրիլ**) ի դէմ երեկոյիս անցեալ զետինքն եղեւ անձրեւ մեծ մինչեւ կէս ժամ եւ ապա էանց: Եւ երեկոյիս՝ ի մէջ աղշամպաղուն եւ եաթսուին նստեալ կայի ի Մղտեսցն, աղաղակ մեծ ելաւ թէ Երոցք կայ, եւ մեր ելեալ ի դուրս, տեսեալ զի եկեղեցի մեր էր որ այրէր, որ ասի Սուրբ Սարգիս. այրեցաւ եւ տանիսն ի վայր իջաւ եւ կանգնեալ մնաց չորս պատն:* | *ՌՃԱ թվականի **ԻԳ ապրիլի** նոր կիրակէի յերկրորդում ժամու երեկոյի մինչ նստեալք ընդ պապոյն իմոյ Ամբակումի սպասելաւ ի կատարումն աղօթից եկեսցէի: Աղաղակ բարձավ յանկարծակի և բօղ ձայնի ի փողոցի և դղրդումն ոտից երթևեկի թէ հրկիզութիւն գոյ ի մերում սահմանի և Սուրբ Սարգիս եկեղեցին ահա հրով բորբոքի: Եւ յորժամ ելաք ի բարձրադիտակ տեղի տեսաք անտանօր զի ինքնինքեան վառի և ի քաղաքս բոցն տարածանիւր լուսովն հրոյ ձգի. Խնայեաց Տէրն ամենակալ մեր ազգի որ ոչ գոյր ինչ հողմոյ նշոյլ ի պահն պատուհասի[10]:* |
| *Շաբաթ օրս /**10 Յունվ. 1657**/ (ընդգծումը-Գ.Ա.) ել դեսպանն Պարսից և անց յՈւսկիւտարն[11]:* | *Ի **մետասան յունվարի** (ընդգծումը-Գ.Ա.) յուղարկեն զդեսպան պարսից[12]:* |

Ինչպես վերը տեսանք, «Տարեգրական պատմութիւն»-ը Օրագրության բառացի կրկնությունը չէ: Երեմիա Քյոմուրճյանը որոշակիորեն աշխատասիրել է երկը՝ անգամ ինքն իրենից օգտվելու դեպքում, ավելին՝ «Տարեգրական պատմութիւն»-ը շատ տեղերում լրացնում է Օրագրությանը, հաղորդում է տվյալներ, որոնք Օրագրության համապատասխան հատվածներում բացակայում են, երբեմն դրանք ծառայում են որոշ ճշտումներ անելուն, ինչպես նաև տարատեսակ իրադարձությունների բացահայտմանը:

[10] Տարեգրական պատմութիւն, թ. 27բ:

[11] Օրագրութիւն, 224:

[12] Տարեգրական պատմութիւն, թ. 113ա:

| Օրագրութիւն | Տարեգրական պատմութիւն |
| --- | --- |
| *Եւ գրեաց պատասխանի առ որդին Թայարի կնքով, **ոչ գիտացաք**[13]:* | *Եւ գրեաց առ որդին Թայարի Քեօփրուլին թէ **տվեալն տվեալ է**[14] (ընդգծումները-Գ.Ա.):* |
| *...չարակամք ընդարձակացուցին զբերանս իւրեանց յերկինս[15]:* | *Այլ ըստ մեր խորհեալ գրեցին առ Եղիազարն թէ ահա յայտնեցին Թյլթեանք զնստեղյ տեղդ…[16]:* |
| *Գալուստ վէզիրին ասացաք Հոկտեմբերի ԺԴ էր, որ բանակ արար ամենայն զօրօք ընդ թագաւորին[17]:* | *Եւ հրաման արար (Քյոփրուլու վեզիրը-Գ.Ա.) կալան զգունդս և զերամս զուսանացն իւրեանց համբաւուք. Ճէվահիրճի ղօլի, Մէվի ղօլի, Ահմէտ ղօլի, Փօստալճի ղօլի, Աքիտէ ղօլի և այլք որք ժողովէին զգեղեցկատեսիլ մանկունս և զարդարէին պէսպէս պայծառ հանդերձիւք խաղային երգէին՝ մտանելով ի ձև և ի կերպարանս հեռաստան ազգաց՝ հնդկաց, պարսից, ֆռանկաց զլեզուս և զբարբառս կատակերգութեամբ չքնաղ իմն ցուցանելով տեսողաց և լսօղաց յարկ առ յարկ պատուաւոր տիկնեաց և խնճոյս և ի հարսանիս մեծամեծաց: Եւ զնային, խմբէին մանկունք յամենայն ազգաց մինչև նս ի հայոց և օրըստօրէ ջանային նախանձու մի քան զմի յաւելուլ զանուն /լուս. համբաւուն/, կալաւ զոսա և եդ ի նաւս պատերազմացն և ոմանք ի նոցանէ փախեան և ոմանք տաճկացան[18]:* |

Տարեգրական պատմությունը երբեմն հնարավորություն է տալիս նաև ճշտելու անձնանուններն ու տեղանունները, որոնք կա՛մ բաց են թողնված Օրագրության մեջ, կա՛մ այլ կերպ են ավանդված: Այսպես, տարբեր կերպ է տրված օսմանյան մոգպետի (մուֆթի) անունը: Տարեգրության մեջ առկա է

[13] Օրագրութիւն, 272:

[14] Տարեգրական պատմութիւն, թ. 128ա:

[15] Օրագրութիւն, 306:

[16] Տարեգրական պատմութիւն, թ. 154բ:

[17] Օրագրութիւն, 300:

[18] Տարեգրական պատմութիւն, թ. 114աբ:

Հալեպի մերձակայքում գտնվող Ամըղ դաշտի անվանումը, որ բացակայում է Օրագրության մեջ.

| Օրագրութիւն | Տարեգրական պատմութիւն |
| --- | --- |
| *Պօլուլի Մուստաֆա*[19] *Եւ իբր զթագաւորս նստէր, նստէր անահ և անհոգ, նաև զքաղաքսն տիրապետէին և նստեալ էին ամենայն բանակօք մերձ քաղաքին Բերիոյ՝ ի դաշտն, որ ասի (պարապ)*[21]: | *Պօլէվի Մուստաֆայ*[20] *…զօրօքն եւ ի դաշտէն Պրուսայու խաղաց գնաց մերձ առ Բերիա և նստաւ ի դաշտն որ կոչի* ***Ամըղ*** *(ընդգծումը-Գ.Ա.):* |

Ի տարբերություն Օրագրության՝ Տարեգրությունը ավանդում է պոլսահայ նշանավոր այրերի անունները, սակայն ոչ բոլորինը, 24-ից միայն՝ 15-ինը[22], նույն կերպ հաղորդվում է նաև Թլթյան կոչված խմբի անդամների անունները[23]: Տարեգրական պատմության էջերում շատ ավելի հանգամանալի են ներկայացված Երեմիա Քյոմուրճյանի պատմահայեցողությունը լուսաբանող որոշ դրվագներ. «Եւ ի նոյն սերմանց յարմատոց և յերակաց նոցուն հովիւք և հոտապետք ինքնամատոյցք ըստ Սրբոյն Սահակայ և Ներսիսի տեսլեան և (լուսանցք՝ Քերթողահօրն) և Կոզեռին ասից»[24]: Օրագրությունը տեսիլների հեղինակներից պահպանել է միայն Ներսես Մեծի անունը, հիշատակված չէ նաև Մովսես Խորենացին[25]: Տարեգրական պատմությունն առավել ընդարձակ է ներկայացնում նաև ջալալիների ապստամբության պատմությունը, դեպքերի նկարագրության հաջորդականությունը այստեղ առավել տրամաբանված է. «Օրագրութիւն»-ը, այսպիսով, ջալալիների ապստամբությունը ներկայացնելու համար սկզբնաղբյուր չի ծառայել[26]: Դիտելի է նաև, որ «Տարեգրական պատմութիւն»-ը Օրագրության համեմատությամբ առավել բաց շարադրանք ունի, հեղինակն այստեղ

---

[19] Օրագրութիւն, 326:

[20] Տարեգրական պատմութիւն, թ. 164ա:

[21] Օրագրութիւն, 300:

[22] «Եւ ԻԴ արքն այսոքիկ են. Վանլի Ռուհիճան, Խօճա Տաւուտ, Խանճի Սէֆէր, Արայճի Շէհրի, Էքմէքճի Պէկլէր, Քէրէստէճի Գրիգօր, Յարութիւն Եաղճի, Հաճի Կօստիկ, Սիմոն Երէց, Քիւրքճի օղլի Երէց, Պօտուռ Սիմօն, Մկրտիչ, Մուրատ, Ֆէրհատ օղլի, Յարութիւն պալի», Տարեգրական պատմութիւն, թ. 165բ-166ա:

[23] «Աստուածատուր Թլթլ, որ թոթովախօս էր և վայրահաչ, Աստուածատուր Փա/անընթեռնելի/, և Կովրծուծ Գարկա զէրիֆ Աստուածատուր, էսիլի թօռն ի Աստուածատուր երէց և Պօտուռ Մանուկ օղլի Աստուածատուր երէց եղբայր Թլթլի, Թօրօս Մօրօս, Պօտուռ Սիմօն և Կորեկ Մղտեսի սուտ վկայ և հայհոյիչ», նոյնը, թ. 174բ:

[24] Նույնը, թ. 143ա:

[25] Օրագրութիւն, 289:

[26] Տարեգրական պատմութիւն, թ. 144բ-145աբ-146ա: Հմմտ. Օրագրութիւն, 292-294:

որոշակիորեն ավելի անկաշկանդ է ժամանակակիցների հանդեպ իր գնահատականներում:

Այսպիսով, Երեմիա Քյոմուրճյանի «Օրագրութիւն» և «Տարեգրական պատմութիւն» երկասիրությունների միջև կապը անհերքելի է. Օրագրությունը Տարեգրական պատմության համար սկզբնաղբյուր է հանդիսացել 1652-1662 թթ. իրադարձությունները շարադրելիս: Տարեգրության սկզբնաղբյուրների շարքում Օրագրությունը առաջնային տեղ է գրավում:

*

* *

Ասվածը զարգացնելով՝ անդրադառնանք նաև Երեմիա Քյոմուրճյան-Միքայել Չամչյան ակներև կապին[27]: Հայագիտությունը վաղուց է հնչեցրել այս նմանության հարցը[28], իր Պատմության մեջ Մ. Չամչյանը ինքն էլ քանիցս հիշատակում է Երեմիա Չելեպիից օգտվելու հանգամանքը. «...բայց սակայն մի ումն 'ի ծանօթից Եղիազարու՝ Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեանց՝ այր երևելի և զգօն, տուեալ դրամս պահապանաց՝ եմուտ առ նա և որպէս ինքն պատմէ, ետես»[29] կամ «Երկար գրէ զսոյն և Երեմիա Չէլէպի Քեօմիւրճեանց Կոստանդնուպօլսեցի»[30]: Սակայն գերադասում է սահմանափակվել այսքանով և չի ցուցում, թե Երեմիա Քյոմուրճյանի որ գործից է այդչափ շատ օգտվում:

Բնագրային-համադրական քննությունը ցույց է տալիս, որ իր «Պատմութիւն հայոց» երկի վեցերորդ գրքի («Յաղագս անիշխանութեան հայոց. սկսեալ 'ի թուականութենէ ամաց Տեառն 1380 մինչև 'ի 1784») ԼԲ-ԼԹ գլուխների (ԼԹ գլուխը՝ ներառյալ մինչև Մարտիրոս Ղրիմեցու մահը՝ 1683 թ.[31]) շարադրանքում, որ ընդգրկում է XVII դարի երկրորդ կեսի արևմտահայոց պատմության անցքերը, Մ. Չամչյանը գլխավորապես հետևել է Երեմիա Քյոմուրճյանի «Տարեգրական պատմութիւն» երկին: Արդ, ներկայացնենք որոշ հատվածներ.

---

[27] Մ. Չամչյանի պատմահայեցողության խնդիրների տեսակետից մեզ համար ուղենշային է եղել. **Ութուջյան Ա.**, 1974, N 3, 127-138:

[28] Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեան, 1932, հ. Բ, 718: **Նշանեան Մ.**, 1913, 49-52:

[29] **Չամչեան Մ.**, 1786, 680:

[30] Նոյնը, 691:

[31] Ղրիմեցու մահվան մասին Մ. Չամչյանը գրում է. «Եւ եղև յետ այսորիկ 'ի չուել Մարտիրոսի յԵրուսաղէմ՝ հասեալ յԵգիպտոս՝ հիւանդացաւ և մեռաւ անդ, և թաղեցաւ յեկեղեցւոջ Սրբոյն Մինասայ, յամի 1683. ՌՃԼԲ» (**Չամչեան Մ.**, 720): Երեմիա Քյոմուրճյանը ավանդում է. «Եհաս Մարտիրոսն յԵգիպտոս և անդ ախտացեալ սպասաւորին միոյ մեռանէր՞ և յետ աւուրց ինքն ևս վախճանէր թաղեալ յեկեղեցի Սրբոյն Մինասայ» (Տարեգրական պատմութիւն, թ. 240բ): Մարտիրոսի մահվան տարին Մ. Չամչյանը հաղորդում է՝ Երեմիա Չելեպիի հետևությամբ: Ամփոփելով նրա մասին իր կենսագրական հաղորդումը՝ Երեմիան գրում է. «Մարտիրոսիս ջանքն այն էր, թէ յայսմ ամի ցուցանէր զառաջնորդութիւն իւր յԵրուսաղէմ…և ոչ ևս եհաս բաղձանաց իւրոց, քանզի ՌՃԺԴ թվականէ մինչև ՌՃԼԲ թւականիս բաւեաց աղմունքն…» (Տարեգրական պատմութիւն, թ. 241ա):

**Տարեգրական պատմութիւն**

*Եւ ի հասանել յաւուր Ղազարու յարութեան շաբաթ մեծամեծք ընդ վէզիրին ի տիւան զի գտեալ թուղթ մի գրեալ ի պատրիարքէն հոռոմոց որ Բարդենիոսն կոչէր՝ առ Մօսկօֆն և առ Պուղտան եթէ տաճիկք նուաստացեալ կան բայց կամին գալ ի վերայ ձեզ պատերազմ եթէ զլեհ ի միջոյ ձեր բառնայք և հեշտ է ձեզ ի վերայ սոցա գալ: Այսմ թղթի սակի արարին խորհուրդ եւ ելեալ ի տիւանէ եկն առ յարկ իւր վէզիրն և կոչեալ զպատրիկն առ իւր եւ նա երթայր առ նա և ի ցուցանելն զկնիք թղթին թէ քո է և նա ասէ իմ է և ապա բացեալ ասէ ընդէ՞ր արարէր զայս խայինութիւն, տայ ի ձեռս սուպաշուն և տարան ի զուբս մահապարտացն և վէզիրն ազդեալ թագաւորին և Ժ երորդ ժամու նոյնաւուր շաբաթու հանին ի բանտէ սուպաշովք և հասասպաշովք եղեալ չուան ի պարանոցն և մունետիկն աղաղակեալ առաջի նորա երթայր թէ թագաւորին խայինութիւն առնողին հալն այս է և յրտեսին պատուհասն՞ այս է և անցուցեալ ամենայն շուկայովք տարան ի Պարմաղ ղափուն և պատրիարքական զգեստիւն և վեղարովն և սամուր մուշտակաւն կախեցին զնա և երթայր առ նա ի տեսութիւն և այգուցն դահիճն կողոպտէ զգեստն նորա ի նմանէ և միայն վարտօքն և վեղարիւն թողոյր զնա ի կախաղանին և ԲՇԻ հրաման տայ առնել առնել զնայ ի վայր և յազգացն յունաց յունաց սպառնայ մի իշխեսցեն որ անդ երնիլ այլ*

**Պատմութիւն Հայոց**

*Այլ յառաւելն ճոխանալ յունաց ՛ի վերայ հայոց՝ աղետալի իմն գործեցաւ ընդ նոսա ՛ի նմին ամին ՛ի Կոստանդնուպօլիս. (զոր ոմանք համարին ՛ի նախընթաց ամի). մանզի գտաւ գիր գրեալ ՛ի Բարթենիոս պատրիարգէն յունաց առ Մոսկովս և առ Պուղտանս ընդդէմ տէրութեան օսմանցւոց. և պարտաւորեալ նորա յատենի եպարքոսին՝ կախեցաւ ՛ի Պարմախ Խաբու ասացեալ տեղւոջ իւրով զգեստիւն և վեղարով և սամոյր մուշտակաւ և ապա արկաւ մարմին նորա ՛ի ծով: Խնդրեցան և մեծամեծք յունաց, նաև յոյն պատրիարգն Երուսաղէմի. այլ ոմանք եղան ՛ի բանտ մահապարտաց. և յայնմ օրէ հրաման եղև, զի յոյնք գտակ դիցեն ՛ի գլուխս, և հայք կապեսցեն զխայտ փակեղս. և յառաւելուլ երկիւղի ՛ի վերա յունաց՝ բազում գանձուք և պատարազօք դիմեցին յոտս եպարքոսին, և հազիւ ուրեմն հաշտեցուցին զերեսս նորա*[33]*:*

[33] Չամչեան Մ., 670:

*եղեալ ի վերայ բեռնակրի տարեալ ի ծովեզր կապեցին պարան ի պարանոցն և հեռացուցեալ արկին ի ծով եւ վէզիրն որոնէր զմեծամեծսն յունաց և զպատրիկն Երուսաղէմի որք նսեմացեալ փախեան յորմէհէտէ այն գործեցաւ և զոմանս եզիտ և եղ ի բանտս մահապարտաց: Եւ մունետիկ գոչէր ի քաղաքս թէ հայք զփակեղս խայտ կապեսցեն և յոյնք զտակ և առաւել զամենայն ազգն յունաց ահաբեկեցան և դողումն կալաւ զնոսա և կասկածէին ի սուր մաշել զնոսա և բազումք փախեան և շատք ի տունս իւրեանց ամփոփեցան մինչև բազում կաշառս ետուն վէզիրն և ցածուցին ի բարկութենէ[32]:*

Կցանկանայինք մի փոքրիկ նկատառում անել սկզբնաղբյուրն օգտագործելու Մ. Չամչյանի աշխատելաոճի վերաբերյալ. Երեմիա Քյոմուրճյանի շարադրանքում իրադարձությունների պատկերը տեղ-տեղ վայրիվերո է և անփույթ: Մ. Չամչյանը որոշակիորեն համակարգված մոտեցում ունի, նրա շարադրանքում դեպքերը իրար են կապված պատճառահետևանքային կապով: Առավել ուշագրավ է այն հանգամանքը, որ թեև բովանդակային առումով Մ. Չամչյանը հավատարմորեն հետևում է Երեմիա Չելեպիին, ժամանակագրության հարցում երկու հեղինակների մոտ տարբերություն կա: Արդեն նշեցինք, որ «Օրագրութիւն» և «Տարեգրական պատմութիւն» երկերը ժամանակագրական չնչին անհամապատասխանություններ ունեն, որ վերաբերում է 1-2 օրվա տարբերությանը. սակայն հիշատակված տարեշրջանները երկու երկում էլ, առանց բացառության, նույնական են, ինչը չի կարելի ասել «Պատմութիւն Հայոց»-ի համար: Պատահում է՝ Մ. Չամչյանը, Երեմիա Քյոմուրճյանի համեմատությամբ, դեպքերը թվագրում է մեկ-երկու տարվա տարբերությամբ:

| **Տարեգրական պատմութիւն** | **Պատմութիւն Հայոց** |
| --- | --- |
| *Թվին* ***ՌՃԷ*** *ապրիլ ԺԱ Զատիկն սուրբ ի մահճի մնալով արգելաք բայց զԹումայի ումեմն վարդապէտ կոչելոյ զոչ ընդունելն քաղաքացոց մեր զրեցաք ի վերոյ որ և նա անկեալ ի դրունս բռնակալաց բազում ջանիւ հաճեալ զկամս տէֆտէր-* | *[****1657****] (ընդգծումները՝ Գ.Ա.) Զայն իբրև ետես Թովմա վարդապետ Բերիացի, որ զհետ էր պատրիարքութեան, անկաւ ի վարանս տարակուսի. և ապա դեգերեալ ի դրունս այլազգեաց ծանրագին ընծայիւք՝ ջանացաւ հաւանեցուցանել զնոսա,* |

[32] Տարեգրական պատմութիւն, թ. 115բ-116ա: Հմմտ. Օրագրութիւն, 233-236:

*տարի ըստ բաղդատութեան պատրիարքութեան յունաց խնդրէ տալ զպարաթն որպէսզի ամենայն եպիսկոպոսունք որ յարնելս և յարևմուտս ընդ իշխանութեամբ թագաւորիս ի ներքոյ հրամանաց իստապօլոյ պատրիարքիս լիցին որոյ պատճառէ և յաւելցուցեալ զհարկն դիմոսական որ ՃԽՌ ըստակ էր, ի տարւոջն ԴՃՌ ըստակ արար և այնպէս գրեաց ի պարաթն զամենայն եպիսկոպոսական գաւազանսն և զԵրուսաղէմ ընդ նոսա: Եւ տվեալ պարգևս բազում առ հրաման ի Քեօփրուլիէ անդ ի յԷտրէնէ: Եւ առաքեաց այր մի թղթիւք ընթեռնուլ յեկեղեցիսն և գրեալ թէ վէքիլ իմէ Նիկողայոս վարդապետն Թուլկուրանցի դիտեսցէ զիրաւունս և զարդիւնս աթոռոյս մինչև դարձայց ի ձեզ: Եւ աշխարհական աթոռակալքն ի մի վայր հաւաքեալ հանին նախատանօք յեկեղեցացն զԴաւիթ Հալեպցին և զՆիկողոսն և զԱստուածատուր Վանեցին*[34]*:*

*մանաւանդ զդիւանադպիրն, զի մարթացի հասանել ՙի պատրիարգութիւն. և այն առաւելութեամբ իշխանութեան քան զոր նախընթաց պատրիարգք ունէին՝ հաւասար իշխանութեան պատրիարգին յունաց. մինչև ունիլ ընդ իշխանութեամբ իւրով և զպտրիարգն Երուսաղէմի. և վասն այսր իսկ խոստացաւ տալ յարքունիս ամ ըստ ամէ փոխանակ ՃԽՌ փողոյ, ԴՃՌ փող: Եւ իբրև հաճեցոյց զբազումս, գնաց յԱդիանուպօլիս առ ոտս եպարքոսին, և մատուցեալ երևելի ընծայս ՝ հանդերձ խոստմամբք դրամոց՝ էառ ՙի նմանէ հրովարտակ պատրիարգութեան. յորում ետ գրել ընդ իշխանութեամբ իւրով՝ ընդ այլ եպիսկոպոսունս և զպատրիարգն Երուսաղէմի: Եւ առաքեաց անտի թուղթ ՙի Կոստանդնուպօլիս՝ ընթեռնուլ զայն յեկեղեցիս, և ծանուցանել ամենեցուն, թէ ես ընկալայ աստ զպատրիարգութիւն իշխանութեամբ արքունի և այժմ կարգեմ ինձ փոխանորդ այդր զՆիկողայոս վարդապետ Թուլկուրանցի. և նա տեսցէ զգործ և զիրաւունս աթոռոյն՝ մինչև դարձայց առ ձեզ. և յաւելոյր ևս ասել, թէ գործակից նորա լիցին Դաւիթ վարդապետ Բերիացի, և Աստուածատուր երէց Վանեցի՝ Թլթլն կոչեցեալ, այն է թոթովախօս*[35]*:*

«Տարեգրական պատմութիւն»-ը ոչ միշտ է հետևողականորեն ավանդում տարեթվերը, ինչն էլ թերևս կարող էր դառնալ Մ. Չամչյանի սխալմունքի պատճառը: Ժամանակագրական կարգը խստագույնս պահպանված է «Օրագրութիւն» երկում, որտեղ շարադրանքի առանցքը այն 14 տարիներն են, որ ընկած են երկի ժամանակագրական ընդգրկման հիմքում

[34] Տարեգրական պատմութիւն, թ. 138ա: Հմմտ. Օրագրութիւն, 275-280:

[35] **Չամչեան Մ.**, 671-672:

(«Օրագրութիւն»-ը, հայտնի է, որ ներառում է 1648 թ. հունիսի 11-ից 1662 թ. հոկտեմբերի 24-ը ընկած ժամանակաշրջանը, բացառություն է 1651 թվականը, որը հեղինակը գրի չի առել): Ամսվա, օրվա և անգամ օրվա ժամերի ճշգրիտ հիշատակմամբ 14 տարվանից յուրաքանչյուրը գրի է առնված առանձին և հեղինակի կողմից հստակ տարբերակված է: Տարեգրական պատմության ժամանակագրական բացթողումները, այսպիսով, անհրաժեշտության դեպքում լիովին վերականգնելի են Օրագրության տրամադրած տվյալների միջոցով, որոնք, մեր կարծիքով, կարող են արժանահավատ հիմք դառնալ նաև «Պատմութիւն Հայոց»-ի համապատասխան հատվածներում հանդիպող ժամանակագրական անճշտությունները շտկելու համար[36]: Ահավասիկ.

| Օրագրութիւն | Տարեգրական պատմութիւն | Պատմութիւն Հայոց |
|---|---|---|
| *[**1658**] ...յետ որոյ ապստամբիլն Թէյարին, որում ի վէզիրէն գիր երթայր առ նա թէ Անհնազանդ ես թագաւորի և հակառակ իմ, վասն որոյ և մարդ առաքեալ՝ տալ զՍուրբ Յակոբ ի ձեռս Յունաց մերձ յաւուրս տօնի սրբոյ Հոգոյն Պենտեկոստէի. որ յետ աւուրց ոչ բազմաց ելին ի ճանապարհ ամենայն մեծամեծօք և ընդ այլ փաշայիցն, եթէ կամայ և յակամայ Թէյարի որդին առեալ զՎարդապետն՝ առ իւր բերէր ի բանակին զբուն ամառս մինչ ի Պուրսայ՝ եթէ վէզիր լինելոց է և կամս* | *Եկն դարձեալ թուղթ ի Քեօփրուլիէն Թէ անհնազանդ ես թագաւորի և իմ հակառակ: Եւ յապստամբելն Թէյարի որդոյն ընդ այլովք մարդ առաքեալ յԵրուսաղէմ տալ զՍուրբ Յակոբ ի յոնս, որ էր յաւուրս Պէնտէկոստէի: Եւ զԵղիազարն կամա թէ յակամայ առեալ ընդ իւր շրջեցուցանէր մինչև եկին հասին ի Պրուսա իբրու այն յուսով, եթէ լիցի վէզիր կամ փոխեսցեն զվէզիրն արարսցէ ըստ կամաց նորա: Եւ Եղիազարն եթէ գայր առ վէզիր, ի նոցանէ երկնչէր և առ* | *[**1657**] Յայնժամ Թէյար Օղլուն կոչեալ առ ինքն զԵղիազար՝ պահեաց զնա առ իւր՝ ակն ունենալով առնուլ և այլ ինչ ՚ի նմանէ. և յուսացուցանէր զնա ՚ի վերայ վանից Սրբոյն յակոբայ, ասելով՝ թէ մեք հանդերձեալ եմք փոխել տալ զեպարքոսն, և կարգել նմին ՚ի մենջ եպարքոս. և յայնժամ ՚ի գլուխ տարայց զխնդիր քո: Եւ թէպէտ Եղիազար ոչ հաւատայր այսմ, և աղաչէր արձակել զինքն, բայց Թէյար Օղլուն ոչ եթող զնա իբր տարի մի[39]:* |

[36] 1662 թ. ի վեր՝ Տարեգրական պատմության մեջ Երեմիա Քյոմուրճյանը կանոնավորապես գրանցել է միայն 1663, 1664, 1665 թվականները՝ համապատասխան իրադարձություններով: Դրանից հետո, չհաշված արդեն իսկ նշած մեկ-երկու բացառությունը, նա դադարում է թվագրել իր վկայությունները: Դրանք թվագրում է Մ. Չամչյանը «Պատմութիւն Հայոց»-ի մեջ:

| | |
|---|---|
| *ամենայնիւ արասցէ: Եւ նա կայր դեգերեալ ընդ նոսա. եթէ զայր ի նոցանէ երկնչէր, եթէ մնայր՝ զկատարածն նկատէր զի յերկաբեցաւ. եթէ նոքա պարտին՝ յայսցանէ աh կրէր* [37]*:* | *նոսա զդեգերելն կասկածէր ի վէզիրէ և մնայր անդ ի բանակ նոցա* [38]*:* |

Արդ, ներկայացնենք Երեմիա Քյոմուրճյանի և Միքայել Չամչյանի կիրառած ժամանակագրական համակարգի տարբերության ուրիշ օրինակներ ևս.

| Պատմութիւն Հայոց | Օրագրութիւն |
|---|---|
| [**1656**] Զայս այսպէս գրեալ բդեշխին Դամասկոսի (էջ 667) | [**1658**] (էջ 268-269) |
| [**1656**] Յայնժամ առեալ նորա ընդ իւր զոմանս (էջ 667-668) | [**1658**] (էջ 269) |
| [**1657**] Ի նոյն աւուրս հրաման յղեաց եպարքոսն (էջ 668) | [**1658**] (էջ 294-300) |
| [**1657**] Իսկ Ղազար խոյս տուեալ անտի գնաց ի Կիւլիկիա (էջ 669-670) | [**1659**] (էջ 336) |
| [**1657**] Իսկ Մարտիրոս վարդապէտ յորդորեալ ի բազմաց (էջ 670) | [**1658**] (էջ 269, 272) |
| [**1657**] Ի նոյն աւուրս յետ մահու պատրիարգին յունաց (էջ 671) | [**1658**][40] |
| [**1657**] Զայն իբրև ետես Թովմա վարդապէտ Բերիացի (էջ 671-672) | [**1658**] (էջ 276-277) |
| [**1657**] 'Ի ժամանել այսր թղթոյ Թովմայի 'ի Կ. Պոլիս (էջ 672) | [**1658**] (էջ 277) |

Այսպիսով, քննարկված գործերը իրենց աղբյուրագիտական հենքով միմյանց կապվում են այս հաջորդականությամբ՝ Օրագրութիւն→Տարեգրական պատմութիւն→Պատմութիւն Հայոց: «Օրագրութիւն»-ը դեպքե-

[39] **Չամչեան Մ.**, 668:

[37] Օրագրութիւն, 305:

[38] Տարեգրական պատմութիւն, թ. 153բ-154ա:

[40] Մ. Չամչյանի նկարագրած հատվածը բացակայում է Օրագրության մեջ, սակայն Երեմիա Քյոմուրճյանը հուշում է. «յայտնեալ եմք ի սոսկ մատեանս (նկատի ունի «Տարեգրական պատմութիւն»-ը») զարարմունք նոցին սուղ բանիւ», Օրագրութիւն, 273, հմմտ. Տարեգրական պատմութիւն, թ. 138ա:

րի շարադրանքը ներկայացնում է 1648 թ.-ից մինչև 1662 թ., «Տարեգրական պատմութիւն»-ը, տեղ-տեղ լրացնելով իր սկզբնաղբյուրին, սկսած 1652, իսկ անխախտ հաջորդականությամբ՝ 1656-1657 թթ. հետևում է «Օրագրութիւն» երկին: 1662-ից մինչև 1680-ական թթ. ընկած ժամանակահատվածի դեպքերի սկզբնաղբյուրի ջահը վերցնում է «Տարեգրական պատմութիւն»-ը՝ հանդես գալով հիմնականում իբրև ինքնուրույն աղբյուր: «Պատմութիւն Հայոց»-ի Վեցերորդ գրքի ԼԲ-ԼԹ գլուխների շարադրանքի հիմնական սկզբնաղբյուրը մինչև 1683 թ. «Տարեգրական պատմութիւն» երկն է: Վերջինիս անտիպ լինելու պայմաններում Մ. Չամչյանի «Պատմութիւն Հայոց» գործը տարիներ շարունակ սկզբնաղբյուրային նշանակություն է ունեցել Կ. Պոլսի հայ գաղթավայրի XVII դարի երկրորդ կեսի պատմության լուսաբանման համար: Անհերքելի է հայագիտության համար այս երեք գործի ունեցած հիմնարար նշանակությունը, սակայն մեր օրերում անհրաժեշտ է վերագնահատել դրանք՝ ըստ ունեցած աղբյուրագիտական արժեքի և առաջնայնության:

## ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ

**Ակինեան Ն.,** – 1933, Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեան. կեանքն եւ գրական գործունէութիւնը, Վիեննա, 1933:

**Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեան,** – 1913, Ստամպօլոյ պատմութիւն, հ. Ա, հրատ. և ծանօթ.՝ Վ. Թորգոմեան, Վիեննա, 1913:

[**Երեմիա Չելեպի Քյոմուրճյան**], Տարեգրական պատմութիւն (անտիպ, Վենետիկի Մխիթարյան մատենադարան, ձեռ. հմր. 476):

**Երեմեան Ս.,** – 1902, Երեմիա Չէլէպի Տարեգրական պատմութիւն, «Բազմավէպ», 1902, թիւ 8, էջ 367-369; թիւ 9-10, էջ 473-479:

**Նշանեան Մ.,** – 1913, Օրագրութիւն Երեմիա Չէլէպի Քեօմիւրճեանի, «Շողակաթ», հայագիտական ժողովածու, գիրք առաջին, Վաղարշապատ, 1913, էջ 49-52:

**Զարպհանալեան Գ.,** – 1878, Պատմութիւն հայերէն դպրութեան, հատ. Բ, Վենետիկ, 1878:

**Չամչեան Մ.,** – 1786, Պատմութիւն Հայոց, հատ. Գ, Վենետիկ, 1786:

**Ութուջյան Ա.,** – 1974, Թադեոս Սեբաստացու «Ողբերը» որպես Միքայել Չամչյանի «Պատմության» աղբյուր, «Պատմա-բանասիրական հանդես», 1974, N 3, էջ 127-138:

Օրագրութիւն Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեանի, հրատ. Մեսրոպ արք. Նշանեան, Երուսաղէմ, 1939:

**Патканов К.,** – 1897, Библиографический очерк армянской исторической литературы, С.-Петербург, 1897:

**ГАЯНЭ АЙВАЗЯН**
*Кандидат исторических наук*
*Институт древних рукописей Матенадаран имени св. Месропа Маштоца*
*forgayane@gmail.com*

# СОЧИНЕНИЯ ЕРЕМИИ КЕМУРЧЯНА “ДНЕВНИК” И “ЛЕТОПИСНАЯ ИСТОРИЯ” И “ИСТОРИЯ АРМЕНИИ” МИКАЭЛА ЧАМЧЯНА (ТЕКСТОЛОГИЧЕСКОЕ ИССЛЕДОВАНИЕ)

## РЕЗЮМЕ

Взаимосвязи исторического наследия известного историографа 17-ого века Еремии Челеби Кемурчяна многогранны и разнообразны. Статья посвящена вопросу источниковедческих связей между двумя основными работами Еремии Кемурчяна - “Дневником” и “Летописной историей” и “Историей Армении” Микаэла Чамчяна. Вопрос рассматривается не впервые, но по объему использованных произведений, результатом выводов и уточнений эта публикация не повторяет прежний опыт.

Цельное и обстоятельное текстуальное исследование показало, что “Дневник” является первичным источником “Летописной истории”. Начиная с 1652 и с непрерывной последовательностью с 1656-1657 гг. до 1662 г. “Летописная история” несмотря на то, что доверительно следует “Дневнику”, не является кратким пересказом последнего. “Летопись” во многом дополняет свой источник, уточняет проблемы и упущения. Выявлены также причины хронологических неточностей “Летописи”. В “Дневнике” Еремия Кемурчян в указывает основном дни недели, М. Ншанян подготавливая текст к изданию восстановил также даты числа месяцев. Выясняется, что Еремия Кемурчян ошибался в своих календарных расчетах. Приступить к написанию “Летописи” намного позже, Еремия Челеби взялся согласовать указанные в “Дневнике” даты чисел месяца с днями недели, но сделал это неверно.

В свою очередь, “Летопись” Еремии Кемурчяна была важнейшим источником для “Истории Армении” Микаэла Чамчяна. В изложении 32-39 глав шестой книги трехтомника, охватывающей памятные события западноармянской истории второй половины 17-ого века до 1683 года включительно, М. Чамчян неуклонно следует Кемурчяну. Но в отличие от Еремии Кемурчяна он четко систематизировал представленный материал, и очистил

от армянобуквенного турецкого. Особенно примечателен тот факт, что с точки зрения содержания М. Чамчян верен Кемурчяну, но иногда в вопросе хронологии у них разница 1-2 года. Но это в свою очередь вполне поправимо благодаря отражающими события сведенииям Еремии Кемурчяна.

Таким образом, последовательно взаимосвязаны три произведения: “Дневник”→”Летописная история”→”История Армении”.

**GAYANE AYVAZYAN**
*Ph.D in History*
*The Mesrop Mashtots Institute of Ancient Manuscripts -Matenadaran*
*forgayane@gmail.com*

# “DIARY” AND “ANNALISTIC HISTORY” BY JEREMIA QYOMURTCHYAN AND “HISTORY OF ARMENIA” BY MIKAYEL CHAMCHIAN (TEXTUAL RESEARCH)

## SUMMARY

Interrelation of historiographical heritage of the XVIIth century eminent historiographer Jeremia Chelebi Qyomurtchyan is multifaceted and diversified. This article focuses on the issue of source study interrelations between two valuable works of Jeremia Qyomurtchyan: “Diary” and “Annalistic history” and “History of Armenia” by Mikayel Chamchian. It’s not the first time that this issue gains the attention of scientists, but this publication does not repeat the previous experience from the standpoint of conclusions and clarifications that are put forward, and also in terms of used works' extent.

Holistic and thorough textual study showed that "Diary" is the primary source of "Annalistic history". Beginning with 1652, and with a continuous sequence from 1656-1657 up to 1662 "Annalistic history", despite the fact that it follows "Diary", is not just a brief recount of the latter. In many ways, "Annals" complements its source, clarifies the omissions. So, the causes of chronological inaccuracies of "Annals" are being revealed. Jeremia Qyomurtchyan mainly indicated the days of the week in "Diary", and M. Nshanian restored the dates preparing the text for publication. Thus, it turned out that Jeremia Qyomurtchyan was wrong in his calendar calculations. As he wrote in "Annals" much later, Jeremia Chelebi turned the dates of "Diary" into weekdays in a wrong manner. Beginning with 1662 "Annals" is a primary source by itself, as it transfers history since 1662 until the 80s of the 17th century.

In its turn, "Annals" of Jeremia Qyomurtchyan has had overriding importance for the "History of Armenia" by Mikayel Chamchian. The author steadily followed Qyomurtchyan while stating chapters 32-39 (including 1683) of the sixth book of the three-volume edition, which includes Western Armenian history's memorable events of the second half of the 17th century. But unlike Jeremia Qyomurtchyan, he clearly systematized the submitted material, cleansed it of Turkish words written in Armenian letters. Especially noteworthy is the fact that M. Chamchyan stood by

Qyomurtchyan in terms of content, but when it came to the question of chronology, it sometimes differs 1-2 years. In turn, it is quite correctable due to the data provided by Jeremia Qyomurtchyan.

Thus, the above-mentioned three works are consecutively interrelated: "Diary" → “Annalistic history " → "History of Armenia".

# ՀԱՂՈՐԴՈՒՄ ՆԵՐ – REPORTS

ԱՇԽՈՒՆՋ ՊՈՂՈՍՅԱՆ
*Պատմական գիտությունների թեկնածու*
*Մշակութային արժեքների փորձագիտական կենտրոն*
*ashxung@rambler.ru*

## ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ՀԱՐԱՎ-ԱՐԵՎԵԼՅԱՆ ԳԱՎԱՌՆԵՐԻ ՀԱՅՈՑ ԳՈՐԳԱԳՈՐԾԱԿԱՆ ՄՇԱԿՈՒՅԹԻ ՄԱՍԻՆ

**Պատմական հակիրճ ակնարկ:** Մեծ Հայքի Վասպուրական նահանգը ձգվում էր Վանա լճի արևելյան ու հարավ արևելյան ափերից մինչ Գողթան գավառ ու Արաքսպար, արևելքում ու հարավ-արևելքում էլ՝ Ուրմիա լճի ափերն ու Արևելյան Տիգրիսի վերին հոսանքների ավազան: Այս տարածաշրջանը հայոց հնամենի թագավորություններից մեկի՝ Վանի թագավորության կենտրոնական հատվածն էր, իսկ Վան քաղաքն էլ՝ նրա մայրաքաղաքը Տուշպան: Արշակունիների գահակալման դարաշրջանում դրա հարավ արևելյան ու հյուսիս-արևելյան տարածքների մեծ մասը պատկանում էր Արծրունի ու Մարդպետական ազդեցիկ նախարարական տներին: Աղբակն իր Հադամակերտ ամրոցով ու նաև Փոքր Աղբակը Արծրունիների նախարարական տան ժառանգական սեփականությունն էր՝ հայրենի կալվածքն ու այդպիսինն էլ մնաց մինչ XI դարի կեսերը[1]: Վասպուրականը հայոց մշակույթի ձևավորման ու հետագա զարգացման հանրահայտ բնօրրաններից մեկն էր՝ հատկապես Արծրունիների թագավորության շրջանում այնտեղ բուռն զարգացում էին ապրում շինարարական արվեստը, գրչությունը, բոլոր տեսակի արհեստներն ու հատկապես ոսկերչությունն ու զինագործությունը: Տարածաշրջանը ուներ նաև երկրագործության ու անասնապահության զարգացման համար միանգամայն նպաստավոր պայմաններ, որի արդյունքում էլ հնարավորություններ կային նաև օժանդակ զբաղմունքների զարգացման համար: Վասպուրականում գորգագործության զարգացմանը նպաստող կարևոր հանգամանք էր բրդատու ոչխարի ցեղատեսակների առկայությունը[2]: Վան քաղաքն էլ հայտնի էր որպես արհեստների և առևտրի կենտրոն՝ մասնավորապես այստեղ բարձր մակարդակի էին ոսկերչությունը, զինագործությունը, ոստայնանկությունը՝ այդ թվում նաև գորգագործությունը և կարպետագործությունը:

[1] **Թովմա Արծրունի և Անանուն**, 1985, 185: **Աղոնց Նիկողայոս**, 1987, 355:

[2] **Թոխմախյան Արսեն**, 1881, 85:

Վասպուրականի գորգագործական մշակույթի ուսումնասիրման հարցում անտարակույս, կարևորագույն սկզբնաղբյուր է «Պազիրիկ» կոչված գորգը[3]: Վասպուրականում գորգագործության զարգացած լինելու մասին բավականին տեղեկություններ են պարունակում արաբական գրավոր սկզբնաղբյուրները: Յակուտ ալ-Համավին (1178-1229 թթ.) Վանի մասին պատմելով, վկայակոչում է IX դ. արաբ ճանապարհորդ Աբու Ավնիի դիտարկումները, ըստ որոնց, այդ քաղաքում գործում էին խոշոր գորգեր[4]: Պետք է ասել, որ արաբ պատմիչները, լինելով Հայաստանի տարբեր վայրերում, առաջին հերթին ուշադրություն են դարձրել իրենց համար հետաքրքրություն ներկայացնող զբաղմունքներին, սովորույթներին ու առարկաներին՝ մի հանգամանք, որն ըստ երևույթին հատուկ է առհասարակ բոլոր ճանապարհորդներին: Մեր մատենագիրները դրանք դիտել են իբրև սովորական առարկաներ, ուստի և հարկ չեն համարել արձանագրելու դրանց հետ կապված որևէ տեղեկություն:

Աբու Ավնին, նկատի ունենալով իշխանական ապարանքների ու ընդհանրապես վերնախավի ընդարձակ սրահներն ամբողջությամբ ծածկող մեծ գորգերը, հարկ է համարել անդրադառնալ իր աչքով տեսածին: Այն որ Հայաստանում մասնագիտացած էին մեծ մակերեսով գորգեր գործելուն, հաստատվում է Յուսուֆ Աբու Սաջի՝ Թավրիզի ամիրայի կողմից 911 թվականին խալիֆ Մուքտադիրին նվիրած մոտ 960 քառակուսի մետր մակերես ունեցող հայկական գորգի օրինակով: Աբու Ավնիի այս դիտարկումը վկայում է, որ այդ ավանդույթը կար նաև նախորդ դարում: Թովմա Արծրունու պատմությունից հայտնի է, որ Արծրունիները Վանում, Աղթամարում, Ոստանում ու Արծրունյաց տան իշխանության ներքո գտնված այլ քաղաքներում ու ամրոցներում մեծածավալ շինարարական գործունեությամբ էին զբաղված: Ուստի՝ բնական է որ գորգագործական ավանդույթներով հայտնի Վասպուրականում էլ պետք է ավանդական լինեին պալատական վիթխարի սրահները ծածկող խոշոր գորգերի արտադրությունը: Նկատենք, որ Վասպուրականը շատ ավելի աղերսներ ուներ Պարսկաստանի հետ ու վերնախավն էլ բնականաբար տեղյակ էր պարսից պալատական նիստուկացին, որտեղ, կար Խոսրով Անուշիրվան արքայի հանրահայտ հսկայական գորգի ու նրա նմանների ավանդույթը:

Վասպուրականում ու հարակից գավառներում գորգագործության զարգացած լինելը վկայում են նաև այլ ուղեգիրներ: X դ. տաջիկ անանուն ուղեգիրը իր «Հուդուդ ալ-Ալամ» /Աշխարհի սահմանները/ գրքում նշում է, որ Դվինն ու Սալմաստը հայտնի էին գոտիների արտադրությամբ, Դվինը՝ նաև գորգերի, իսկ Խոյը, Բերկրին, Ախլաթը, Արճեշը նշանավոր էին իբրև կարպետագործության կենտրոններ[5]:

---

[3] **Պողոսյան Ա.**, 2008, ԺԲ, 63–79: **Պողոսյան Ա.**, 2013, 10:

[4] **Յակուտ ալ-Համավի**, 1965, 119:

[5] http://odnapl1yazyk.narod.ru/hudud00.htm: **Փափազյան Հ.**, 1953, 78–79:

Նկատենք, որ այդ ամենն էլ անմիջականորեն առնչվում են գորգագործական մշակույթին, իսկ Խոյը, Բերկրին ու Արճեշն էլ արևելյան Վասպուրականի քաղաքներից էին: Սակայն ուղեգրի հաղորդման մեջ որոշակի հետաքրքրություն են ներկայացնում գորգին վերաբերող բառերը՝ նա օգտագործում է զիլի-կալի /zilu-ha-yi qali/ բառակապակցությունը, որը Մինորսկին թարգմանել է «զիլի գորգ» տեսքով[6]:

Պետք է ենթադրել, որ դրանով սկզբնաղբյուրը փաստորեն ներկայացրել է գործվածքի մի տեսակ, որն արտադրում էին Դվին-Ամիդ առևտրական ուղու վրա գտնված այդ քաղաքներում: Անշուշտ, այն պետք է ունեցած լիներ բավականին բարձր պահանջարկ: Մենք հակված ենք ենթադրելու, որ այստեղ խոսքը վերաբերում է «շուլալ կար» ու «օղաճիտ» եղանակներով բնորոշվող կարպետներին, որոնք սովորական երկերես կարպետներից տարբերվում են նրանով, որ նախշերը դիտելի են միայն դիմային կողմից, մինչդեռ մյուս կողմում, աստառին՝ միայն նախշերը գործելու թելերի ծայրերն են կամ ուղղակի նախշերի հակադիր /նեգատիվ/ պատկերները: Բացի դրանից էլ, այս տեսակների կարպետներն ավելի փափուկ են, ավելի դիմացկուն ու գործող թելերից ձևավորված հյուսվածքի շարքերն էլ հնարավոր է նմանեցնել խավահանգույցների: Հիշատակված եղանակներից առաջինով բնորոշվող կարպետները հայոց և քրդական մի շարք ցեղերի միջավայրում հայտնի են հենց **«զիլի»** անվանումով:

Վասպուրականում գորգագործության զարգացած լինելու ու դրա առանձնահատկությունների մասին ինչ որ չափով պատկերացում են տալիս տարածաշրջանի գրչության կենտրոններում XIII-XVI դարերում ստեղծագործած մանրանկարիչների՝ Կիրակոս Աղբակեցու, Ռստակեսի, Ծերուն Ծաղկողի մանրանկարներում տեղ գտած գորգապատկերներն ու գեղազարդման առանձին տարրերը: Դրանցում բավականին հստակորեն դիտարկվում են «օձագալար» պատկերի ոճավորումներով, «շուշան» կամ «տիկնիկ» նախշով եզրագոտիները, բուսածաղկային, խաչազարդերով, շեղանկյունատիպ՝ իրար կցված հորինվաքներով կենտրոնական դաշտը, գունային հիմնական երանգավորումներն ու այլ հատկանիշներ, որոնք այս կամ այն չափով թույլ են տալիս պատկերացում կազմել Վասպուրականի միջնադարյան գորգագործական մշակույթի տեղական առանձնահատկությունների մասին[7]: Դրանք, օրինակ՝ շեղանկյունատիպ հորինվածքներով գորգապատկերները պատմահամեմատական կարևոր սկզբնաղբյուր են ու համադրվելով այլ՝ համանման աղբյուրներին, մասնավորապես Արցախի Ջրվեր գյուղի մոտի 1693 թ. վերաբերող մի տապանաքարի վրա պատկերված նմանատիպ հորինվածքով գորգապատկերին, հնարավորու-

[6] http://odnapl1yazyk.narod.ru/hudud00.htm: **Փափազյան Հ.**, 1953, 78–79:

[7] **Հակոբյան Հր..**, 1975, գիրք 1, տախտակ III,VI,VII, մանրանկարներ՝ 4, 13,14, 37, 1982, գիրք 2, տախտակ I, մանրանկարներ՝ 11, 39, 54, 68:

թյուն են տալիս պարզել այդ տիպի գորգերի ծագումնաբանական մանրամասերն ու տարածման արեալները[8]:

Վասպուրականում գորգագործության միջնադարյան ավանդույթները շարունակվել են նաև հետագա դարերում: XVIII–XIX դդ. Վասպուրականից արտահանում էին գորգեր, կարպետներ, Շատախի շալ, կտավ, ոսկերչական և այլ արտադրանք ու նաև «Վանա կատու»[9]:

Վասպուրականի խնդրո առարկա գավառները, որոնք Օսմանյան Թուրքիայում XIX երկրորդ կեսում կազմավորված վարչական բաժանումներով կազմում էին Հաքյարիի սանջակը,[10] շարունակում էին մնալ գորգագործության կենտրոններ: Այս առումով հատկանշական են 1880-ական թվականներին վերաբերող Մ.Միրախորյանի դիտարկումները: Նա նկարագրելով Հայոց ձորի հայերի կենցաղն ու զբաղմունքները, նշում է, որ նրանք «ձմռան ամիսներին գործում էին ընտիր գորգեր»[11]: Աղբակի հայուհիների մասին էլ հիշատակում է, որ նրանք «կգործին դիմացկուն գորգեր և այլ գործվածքներ»[12]: Այս տարածաշրջանի հայոց գորգագործությամբ զբաղվելու մասին Հ. Էփրիկյանի «Բնաշխարհիկ բառարանում» հիշատակված է, որ տեղի հայ կանայք հռչակված էին գունազեղ գորգեր գործելու իրենց վարպետությամբ[13]: Աղբակի հայերի գորգագործությամբ զբաղվելու մասին, որպես ականատես, հաղորդում է նաև Րաֆֆին՝ «նրանք գիտեն յուրիյանց անասունների բրդից գործել հագուստի բոլոր պիտույքները, որոնցից պատրաստում են վերարկուներ /ապա/, շալվարներ, քազախաներ, զանազան տեսակ օթոցներ, կապերտներ և այլն, որք վաճառքի նյութ ևս դառնում են»[14]: Վասպուրականի մի շարք այլ գավառներում էլ՝ Արծկեում, Բերկրիում, Հայոց ձորում կարպետագործության ու գորգագործության զարգացած ու տարածված լինելու մասին ազգագրական տեղեկություններ է հրապարակել Վարդան Թեմուրճյանը[15]:

Այդպիսով, մեր ձեռքի տակ եղած գրավոր ու պատկերային սկզբնաղբյուրները ցույց են տալիս, որ ինչպես ամբողջ Վասպուրականում, այնպես էլ նրա արևելյան ու հարավ արևելյան գավառներում հայոց համար գորգագործությունը միշտ էլ եղել գործունեության կարևոր ու զարգացած ոլորտ:

Ամեն պարագայում հայոց գորգագործական մշակույթի ուսումնասիրման ու դրա ամբողջական պատկերի բացահայտման առումով կարևոր է պարզել այս տարածաշրջանին բնորոշ գորգերի տիպերն ու դրանց գեղար-

---

[8] **Мкртчян Ш.**, 1989, 163, նկ. 216-217:

[9] Աշխարհագրութիւն չորից մասանց աշխարհի, **Ինճիճեան Ղ.**, 1806, 136: **Պողոսյան Հ. Մ.**, 1988, 33:

[10] **Ա-դօ**, 1912, 9: **Պողոսյան Հ.**, 11:

[11] **Միրախորյան Մ.**, 1885, 18:

[12] **Միրախորյան Մ.**, 1885, 56:

[13] **Էփրիկյան Հ. Ս.**, 1903, 98: **Հակոբյան Հր..**, 1982, գիրք 2, 18:

[14] **Րաֆֆի**, հ. 9, 108:

[15] **Թեմուրճյան Վ.**, 1955, 117:

վետական ու տեխնոլոգիական հատկանիշները: Անշուշտ, այս հիմնահարցերին պատասխանելու համար անհրաժեշտ են ծավալուն ուսումնասիրություններ, մինչդեռ ինչպես պատմական Հայաստանի, այնպես էլ այս տարածաշրջանի գորգագործական մշակույթի մասին այդպիսիք ուղղակի բացակայում են: Սույնով մենք փորձելու ենք մեր ձեռքի տակ եղած աղբյուրների ընձեռած հնարավորությունների սահմաններում ներկայացնել խնդրո առարկա տարածաշրջաններում գործունեության այդ ոլորտի զարգացման գործընթացներն ու դրա առանձնահատկությունները: Միաժամանակ՝ նկատի ունենալով այն հանգամանքը, որ այդտեղ պատմականորեն ձևավորվել էր ժողովրդագրական բարդ նկարագիր ու դրա մաս կազմողների թվում կային գորգագործությամբ ավանդաբար զբաղված էթնիկական տարրեր, անհրաժեշտ ենք համարում, նախ անդրադառնալ այդ հարցին:

***<u>Ժողովրդագրական զարգացումների շարժընթացի մասին:</u>*** Վասպուրականի Արծրունյաց թագավորության անկումից հետո, երբ նրա բնակչության մի մասը Սենեքերիմ թագավորի հետ միասին տեղափոխվեցին Փոքր Հայք, հայոց թվաքանակն այդտեղ համեմատաբար նվազեց, իսկ արաբական տիրապետության շրջանում Վասպուրականի հարավային գավառներում հաստատված քրդական ցեղերն էլ աստիճանաբար տարածվեցին նաև հյուսիսային գավառներում[16]: Աշխարհաքաղաքական հետագա իրադարձությունների արդյունքում դրան հաջորդում են այլ ներթափանցումներ ու տարածաշրջանի բնակչության կազմում սկսում են նկատելի տեղ զբաղվել մահմեդական տարրերը: Դա հատկապես տեսանելի էր հարթավայրային շրջաններում, որտեղի հայ բնակչությունը մեծ մասամբ տեղափոխվում էին լեռնային համեմատաբար ապահով ու անվտանգ վայրերը: Օրինակ, XVI դարում ապրած քուրդ առաջին պատմագիր Շարաֆ խան Բիթլիսին անդրադառնալով պատմական Հայաստանի Աղձնիք նահանգի, մասնավորապես Բաղեշի /Բիթլիս/ ու նրա մերձակա տարածաշրջանների ժողովրդագրական նկարագրին, շեշտել է, որ այդտեղ բնակչության մեծ մասը հայեր են[17]: Սակայն այդ ամենով հանդերձ, հենց XVI-XVII դարերից էլ ավելի ծավալուն ու նպատակային են դառնում պատմական Հայաստանի ժողովրդագրական նկարագրի փոփոխման գործընթացները: Դա առաջին հերթին Օսմանյան Թուրքիայի վարած քաղաքականության արդյունքն էր, որի համաձայն կայսրության արևելյան սահմանների պաշտպանության ապահովման համար Պարսկաստանի հետ ունեցած սահմանամերձ շրջաններում բնակեցվում էին քրդական քոչվորական ցեղեր, որոնց մի մասն էլ հետագայում դառնում է նստակյաց: XVI դարի առաջին քառորդին քրդական խոշոր ցեղապետերի շրջանում մեծ հեղինակություն ունեցած Բիթլիսի քրդական իշխանապետության առաջնորդ Իդրիս Բիթլիսցու առաջնորդությամբ ու Օսմանյան Թուրքիայի սուլթան Սելիմ Յավուզի

---

[16] **Հակոբյան Թ.**, 1984, 277:

[17] **Шараф хан Бидлиси**, 1967, 387:

խրախուսամամբ Միջագետքի հյուսիսային շրջաններից, Հայաստան հորդացին քրդական ցեղերը: Բնակության համար նրանց ցեղապետերին ժառանգական իրավունքներով հատկացվեցին հայահոծ տարածքներ: Քոչվոր, կիսաքոչվոր ու նստակյաց քրդական մի շարք ցեղեր հաստատվեցին Վասպուրականում, Տարոնում ու Բարձր Հայքում: Հատկապես մեծ թվով քրդեր բնակեցվեցին Իրանին սահմանամերձ Բերկրի /Կոգովիտ ու Արտազ գավառներում/, ինչպես նաև Արարատյան դաշտավայրում ու Արցախի և Սյունիքի արանքներում[18]: Այդ հանգամանքն ու նաև այն, որ Վասպուրականը 1550-ական թվականներից թուրքական տիրապետության տակ էր, մեծապես նպաստել էր հայեցի տեղանունների փոփոխություններին՝ երբեմնի հայկական անվանումները թուրքական անվանումներով՝ Աղբակը-Ալպաք, այնուհետև Հեքիարի, Անձևացյաց գավառը՝ Նորդուզ, Բերկրին՝ Պարկրի, Բուժունիքը՝ Խոշապ, Հադամակերտ քաղաքը՝ Հեքիարի-Պաշկալե և այլն[19]: Ասվածը չի նշանակում, թե այդ տարածաշրջաններում հայ հանրույթը դադարում է գոյություն ունենալուց, սակայն փաստ է նաև այն, որ հայերին պատկանող հողատարածքները հիմնականում հանձնվում են քրդերի ցեղապետերին: Այդքանով հանդերձ, ըստ էության որոշակիորեն մնում է նաև հայոց դերն ու նշանակությունը՝ համենայնդեպս 1780-ական թվականներին վերաբերող մի փաստաթղթից պարզվում է, որ Աղբակում եկեղեցիներից մեկի առաջնորդ նշանակելու խնդրանքով տեղի քուրդ բեկերից մեկը դիմել էր Ղուկաս Կարնեցուն[20]: Այդ նույն թվականներին վերաբերող կաթողիկոսական կոնդակներից նկատելի է, որ հայահոծ էին Ուրմիա լճի ավազանի գավառները՝ Մարաղան, Սուլդուզը, Ուրմիան, Սալմաստը, Խոյը և այլն[21]: Հիշատակված տարածաշրջանների ժողովրդագրական նկարագրի մասին այս կամ այն չափի հավաստի տեղեկությունները վերաբերում են XIX դարի երկրորդ կեսին: Ըստ այդմ 1880- ականների կեսերին Վասպուրական նահանգում կային 249361 հայեր, 86368 ասորիներ, 51828 քրդեր, 13964 թուրքեր, 7760 եզդիներ, 809 հրեաներ[22]: Վասպուրականը Արևմտյան Հայաստանի հայաշատ նահանգներից էր, որտեղ հայոց ընդհանուր թվաքանակը գերազանցում էր մյուս էթնիկական տարրերի թվաքանակին՝ միասին վերցրած:

Հայաշատ էին նաև հարակից Սալմաստի և Ուրմիայի գավառները: Ըստ Րաֆֆու դիտարկումների, 1880-ական թվականների սկզբին Սալմաստում կար մինչև հազար տուն հայ ժողովուրդ, մինչդեռ 1827 թվականից առաջ հայոց գերդաստանների թիվն այդտեղ հասնում էր մի քանի հազա-

[18] **Բայբուրդյան Վ.**, 2008, 16–18: **Աղոնց Ն.,** 1996, հատոր Ա, 87: **Հակոբյան Թ.**, 387: **Ալպոյաճեան Ա.**, 1950, 438:

[19] **Պողոսյան Հ. Մ.,** 6:

[20] Դիվան հայոց պատմության, Նոր շարք, գիրք առաջին, **Ղուկաս Կարնեցի**, հատոր Ա, 1780-1785, 1984, 68:

[21] Նույն տեղում, էջ 178, 419 և այլն:

[22] **Պողոսյան Հ. Մ.,** 15:

րի՝ «նրանք գաղթեցին Ռուսաստան, թողնելով ամբողջ գյուղորայք դատարկ, որոնց մեջ հետո բնակվեցին թուրքերը»[23]: Այդ նույն թվականներին Վասպուրականի Աղբակ գավառի վարչական կենտրոն Բաշկալե քաղաքում ապրում էին 100 տուն հայեր, 150 տուն հրեաներ, 10 տուն մահմեդական: Բնակչության հիմնական զբաղմունքը հողագործությունն ու անասնապահությունն էր: 1880 թվականին այդ գավառում ըստ հայ ազատագրական շարժման նշանավոր գործիչ Արսեն Թոխմախյանի հավաքած նյութերի, ապրում էր 9959 հայ, 8608 քուրդ, 1447 ասորի, 489 հրեա: Աղբակի հայ բնակիչները սակավացան շեյխ Ջալալեդդինի արշավանքների հետո՝ 1877-1878 ռուս-թուրքական պատերազմի ընթացքում[24]: Այդ պատերազմից հետո Աղբակի, ինչպես նաև Ալաշկերտի ու Մոկաց գավառների 150 գյուղ դատարկվեցին հայերից: Աղբյուրների հաղորդումներից պարզվում է, որ 1858-1878 թվականների ընթացքում Վանա լճի հարավային մասում ընկած վեց գավառների 2440 հայ ընտանիքներից մնացին 585-ը[25]: 1891 թվականին վերաբերող մի վիճակագրության համաձայն Հաքյարիում բնակվում էին 15 հազար հայ, 180 հազար մահմեդական և այլ ցեղերի պատկանող 105 հազար մարդ[26]: Այսպիսի ժողովրդագրական նկարագրի պայմաններում այս տարածաշրջաններում ընդհանրապես տեր ու տիրական էին քուրդ ցեղապետերը՝ նրանք միայն ձևականորեն էին ենթակա սուլթանին՝ իրականում վարում էին միանգամայն ինքնուրույն ներքին, մասամբ էլ նաև արտաքին քաղաքականություն: Այդքանով հանդերձ, քրդերը միանգամայն թշնամական վերաբերմունք ունեին թուրքերի նկատմամբ ու դրա մասին վկայում է այն հանգամանքը, որ քրդերն ու թուրքերը ոչ մի գյուղում համատեղ չէին բնակվում: Ընդհանրապես՝ քրդական ցեղերի միջավայրում թուրքական ցեղերի համար ընդունված էր «**ռոմի**» անվանումը, ըստ որի տարածաշրջանի համար դրանք համարվում էին օտարական ու խորթ տարր[27]: Թուրքական իշխանությունների քաղաքականությունն էլ ուղղված էր քրդերի ու հայերի միջև հակադրություններ ստեղծելուն ու զարգացնելուն, որի դրսևորումներից մեկն էլ հենց քուրդ ցեղապետերին լայն լիազորություններ տալն էր: Այստեղ կիսանկախ իշխանություն ունեին նաև **«Ջուլը»** ցեղին պատկանող ասորիները, որոնք մեծամասնություն էին կազմում Աղբակին հարակից Ջուլամերիկ գավառում, որն էլ երբեմնի Փոքր Աղբակի մի մասն է հանդիսանում[28]:

XIX դարի երկրորդ կեսին՝ մասնավորապես 1894-1896 թթ. հայկական ջարդերից հետո Վասպուրականի հարավ-արևելյան այս գավառներում

---

[23] **Րաֆֆի**, հ. 9, 70:
[24] Նույն տեղում, 19:
[25] **Պողոսյան Հ.**, 20:
[26] **Ա.-Դօ**, 240-241: **Պողոսյան Հ.**, 49:
[27] **Թոխմախյան Արսեն**, 76: **Մ. Ա.**, 1890, 32: **Պողոսյան Հ. Մ.**, 83:
[28] **Ա.-Դօ**, 10, **Պողոսյան Հ. Մ.**, 84: **Րաֆֆի**, 117: **Հակոբյան Թ.**, 230:




Նկ. 1. Գորգագործի տապանաքար,
1901 թ., Ուրմիա, գ. Ռահվար



Նկ. 2. Գորգ «Աղբակ», Սալմաստ-Աղբակ,
19-րդ դ. կեսեր



Նկ. 3. Գորգ «Կենաց ծառ»
19-րդ դ. վերջ, Խոյ-Սալմաստ



Նկ. 4. Գորգ «Կենաց ծառ»
19-րդ դ. վերջ, Գողթան
գավառ-Սալմաստ



Նկ. 5. Գորգ «Նշանախշով» 19-րդ դ. վերջ,
Խոյ-Սալմաստ



Նկ. 6. Մանրանկար՝ շեղանկյունազարդ
գորգապատկերով, Կարսի ավետարան,
10-րդ դ.



Նկ. 7. Գորգ շեղանկյունազարդ
հորինվածքով, քրդական, Աղբակ



Նկ. 8. Գորգ խաչազարդ հորինվածքով,
Աղբակ-Սոուջբուլաղ



Նկ. 9. Գորգ խաչազարդ հորինվածքով,
Աղբակ-Սոուջբուլաղ



Նկ. 10. Խորանազարդ,
Հաղբատի ավետարան, 1211



Նկ. 11. Գորգ խաչազարդ հորինվածքով,
1847 թ., Գողթան գավառ-Սալմաստ



Նկ. 12. Գորգ «Մեմլինգ»,
Աղբակ-Սալմաստ

տեղի էին ունենում ժողովրդագրական այլ փոփոխություններ ևս՝ օրինակ, Հայոց ձորում հաստատվում ու թվական գերակշռություն են ստանում քրդերը, Խոշաբում եղած շուրջ հազար տուն հայերից մնում է աննշան մասը:[29] Այս ամենի հետ միասին, անհրաժեշտ է հաշվի առնել մի հանգամանք ևս՝ տարածաշրջանում քրդական տարրի գերիշխանությունը պայմանավորված էր տարատեսակ ցեղերի ներկայությամբ, որոնք իրենց հերթին իրար հետ թշնամական հարաբերությունների մեջ էին ու դա արտահայտվում էր փոխադարձ ասպատակությունների ու ավարառությունների տեսքով: Այդ ամենի հետևանքով է նաև, որ Վասպուրականի հարավ-արևելյան գավառներից՝ հատկապես Հայոց ձորից հայերը սկսում են զանգվածաբար տեղափոխվել Խոյի ու Սալմաստի գավառներն ու հաստատվել Աբաղայի դաշտում: Արամ Մանուկյանն իր դիտարկումներում պատմում է, որ Աբաղայի կամ Սալմաստի հայերի մեծ մասը վերջին 40-50 տարվա ընթացքում /1860-1910 թվականներ՝ **Ա.Պ.**/ քրդերի հալածանքների պատճառով Նորդուզից գաղթածներն են, որոշներն էլ՝ Սարայից: Բնակության այդ նոր վայրերում հայերն իրենց միջոցներով մշակում էին քուրդ աղաներին պատկանող հողատարածքներն ու ստանում էին բերքի կեսը: Բացի այդ, նրանք վարում էին աղայի տան գործերը, կատարում պետք եղած տնտեսական ու կենցաղային աշխատանքները: Այս վիճակը անվտանգ ու նպաստավոր էր հայերի համար[30]: Նման իրավիճակի մասին նշել է նաև Ա-Դօն, ըստ որի հողատեր քրդերից ճորտային կախման մեջ գտնված գյուղացու կինն ու աղջիկը իրենց հերթին «պետք է կատարեին աղայի տնային աշխատանքները՝ կար, լվացք, **գործվածքներ գործել** և այլն»[31]:

Վասպուրականի մեզ հետաքրքրող ու հարակից տարածաշրջանների ժողովրդագրական նկարագրի XIX դարի երկրորդ կեսից սկսած փոփոխությունների մի պատճառն էլ արևելյան Անդրկովկասում նավթարդյունաբերության բուռն վերելքն էր: Այդ հանգամանքն ու դրան անհրաժեշտ ու բանվորական ուժի կարիքը պատճառ են դառնում ժողովրդագրական նոր գործընթացների՝ տեղի է ունենում հայոց զանգվածային արտահոսք դեպի արդյունաբերական կենտրոններ՝ հատկապես Բաքու: 1909 թվականին Թիֆլիսում կայացած տնայնագործական համագումարում կայացած ելույթներից մի քանիսում ներկայացնելով խնդրո առարկա տարածաշրջանի գորգագործական մշակույթի նկարագիրը, անդրադարձել են նաև դրա զարգացումներին: Դրանցում մասնավորապես շեշտվում է, որ «դեռևս 1860-ական թվականներին Սալմաստը ներկայացնում էր մի գործարանական Բալախանի իր գորգագործությամբ /***այսինքն զարգացած էր ինչպես նավթարդյունաբերությունը Բաքվի համանուն թաղամասում***-ԱՊ/, նույնը և Թավրիզը: Սակայն նրանցից այսօր բեկորներ են մնում: Սալմաստում գոր-

[29] **Ա.-Դօ**, 45,49: **Պողոսյան Հ.**, 49:

[30] **Արամ Մանուկյան**, 1990, 29–30:

[31] **Ա.-Դօ**, 277: **Պողոսյան Հ.**, 49:

գագործությունը ոչնչացել է, իսկ Թավրիզում մնում է միայն մի հատիկ գործարան»: Ելույթ ունեցողն այդ իրավիճակի հետևանք էր համարում այդտեղից կատարված «հսկայական արտագաղթը, որ վերջին տարիներս սկսված է Սալմաստում», իսկ արտագաղթի պատճառն էլ համարում էր տնայնագործության, մասնավորապես գորգագործության անկումը[32]: Պարսկաստանում ապրած ու Սալմաստի իրավիճակին քաջատեղյակ Յ. Արիստակեսյանի կարծիքով էլ, որը նաև Բաքվում 1908 թվականին կազմակերպված ջուլհականոցի վարպետն էր, հենց արտագաղթի վարակիչ դարձած շարժումն էր համարում այդ տարածաշրջանում տնայնագործական զբաղմունքների ու գյուղատնտեսության անկման պատճառը[33]: Անշուշտ, անկախ գորգագործական մշակույթի անկման պատճառներից ու ծավալից, մեր համար կարևոր է այն հանգամանքը, որ այդ երկու տեղեկություններում էլ շեշտվում է մեզ հետաքրքրող տարածաշրջաններում գորգագործական մշակույթի զարգացած լինելն ու նաև այն՝ որ դրանում առանցքային էր հայոց նշանակությունը՝ այլապես հայոց արտահոսքը չէր կարող վճռորոշ հետևանք ունենալ դրա հետագա զարգացումների վրա: Ավելորդ չէ այդ առումով, նշել, որ նույնիսկ 1880-ական թվականներին Սալմաստի տարածաշրջանում ապրում էր 11700 հայ[34]:

Վասպուրականի հարավ-արևելյան ու արևելյան գավառներին վերաբերող ժողովրդագրական նկարագրին վերաբերող այս հակիրճ տեղեկատվությունից արդեն իսկ ակնհայտ է, որ այդտեղ տնտեսական մշակույթի բոլոր ոլորտներով զբաղվող հիմնական հանրույթը հայերն էին, որոնք նաև կազմում էին բնակչության նշանակալից մասը:

**Վասպուրականի հարավային ու հարավ-արեւյան գավառների գորգագործական մշակույթի ուսումնասիրման արդի նկարագիրը:** Վերը բերված պատմազգագրական նյութերը հնարավորություն են տալիս նշել, որ խնդրո առարկա տարածաշրջանների հայերին բնորոշ էր գորգագործությունը: Գոյությություն ունեն բազմաթիվ ուսումնասիրություններ ու հրապարակումներ, որոնք վերաբերում են քրդական ցեղերի գորգագործությանն ու որոնցում քրդական ցեղերը ներկայացվում են որպես այդ մշակույթի կրողներ[35]: Դրանցում խոսք չկա հայոց կողմից գորգագործությամբ զբաղվելու մասին: Միաժամանակ՝ հասկանալի է, որ տարածաշրջանի գորգագործական մշակույթին վերաբերող վերը բերված գրավոր տեղեկությունների հիմամբ ու հատկապես դաշտային ազգագրական նյութերի բացակայության պայմաններում ծայրահեղորեն դժվար է Վասպուրականի

---

[32] **Տնայնագործական համագումար**, 1909, 256:

[33] Նույն տեղում, 258:

[34] **Մ. Ա.**, 1890, 38:

[35] **Michael Wendorf** Kurdish Rugs and Related Weavings - an 8000 Year Weaving Tradition? http:// www.turkotek.com/salon_00088/salon.htmlw, **William Eagleton**, The Emergence of a Kurdish Rug Type Oriental Rug Review, Vol. 9, No. 5 http://www.rugreview.com/95kurd.htm, նույնը՝ An introduction to Kurdish rugs and other weavings, 1988 և այլն:

գործագործական կենտրոններին բնորոշ գորգերի գեղազարդման ու տեխնոլոգիական հատկանիշների մասին պատկերացում կազմելն ու մանավանդ՝ հայոց ու քրդական գորգերի տարանջատումը: Մինչդեռ Վասպուրականի հայոց գործագործական կենտրոններում հնամենի ու տեղական ավանդույթներ լինելը կարևորվել էր դեռ XX դարի սկզբներին, երբ Կոստանդնուպոլսի սուլթանական թանգարանների համար գորգեր ձեռք բերելու նպատակով մասնագետներն առաջին հերթին ուղղվում էին Բարձր Հայք և Վասպուրական, մասնավորապես Վանի ու Կարինի մզկիթները, որոնցում կուտակված էին հիմնականում տեղի գործագործական կենտրոններում գործված գորգերը[36]: Թեև այստեղ չեն նշվում գործագործության որևէ կոնկրետ կենտրոնի կամ գորգի տիպի անվանումներ, սակայն այն վկայում է դրանց ճանաչված լինելու հանգամանքի մասին:

Հայաստանի թանգարաններում ու արտերկրի մասնավոր հավաքածուներում Վասպուրականին վերաբերող գորգերի ու կարպետների տեխնոլոգիական ու գեղազարդման հիմնական հատկանիշների հիման վրա, փորձենք հնարավորինս ներկայացնել այդ տարածաշրջանին ու նաև մերձակա գործագործական կենտրոններին բնորոշ գորգերի մի շարք տիպեր: Եղած նմուշներից պարզվում է, որ խնդրո առարկա գործագործական կենտրոններում գերակշռում են բուսածաղկային ու երկրաչափական հորինվածքներով գեղազարդվածները, որոնց թվումն են նաև գորգերի այն տիպերը, որոնք համընդհանուր տարածում ունեին Առաջավոր Ասիայի ու Փոքր Ասիայի գործագործական կենտրոններում:

Վասպուրականի հայոց վերագրվող թանգարանային ու մասնավոր հավաքածուներում եղած նմուշների, ինչպես նաև Վասպուրականի ու հարակից տարածաշրջանների քրդական ցեղերին վերագրված գորգերի համեմատական ուսումնասիրությունը թույլ է տալիս մատնանշել դրանց նմանությունն ու հստակորեն նշել, որ խնդրո առարկա տարածաշրջանի գործագործական կենտրոններում ընդհանուր առմամբ տարածված էին գորգերի ու ընդհանրապես գորգատիպ ու կարպետատիպ առարկաների միևնույն տեսակներն ու տիպերը: Ըստ էության, դրանում արտասովոր որևէ բան չկա ու այդ երևույթն էլ բացատրում ենք գյուղական բնակավայրերում հայերի ու քրդական ցեղերի կենցաղային մանրամասերի աղերսներով ու անասնապահությունից ստացված մթերքների մշակման միևնույն ավանդույթների առկայությամբ: Հարկ է կարևորել նաև այն հանգամանքը, որ Վասպուրականը առանձնապես աչքի չէր ընկնում գործագործական ավանդույթներ ունեցող էթնիկական հանրույթների ներկայությամբ՝ այդտեղ հիմնականում բնակվում էին հայերն ու քրդական տարատեսակ ցեղերը, իսկ փոքրամասնություն կազմող թուրքերը, ասորիները, գնչուներն ու հրեաները և մյուսները չունեին այդպիսի ակնառու ավանդույթներ: Կարծում ենք, որ քրդերի գործագործական մշակույթին վերաբերող ուսումնա-

[36] **Դավթյան Ս.**, 1981, 117–118:

սիրությունների հիմնական թերությունն էլ հենց այս առանձնահատկությունների անտեսումն է: Այս առումով միանգամայն տեղին դիտարկում է կատարել արևելյան գորգի հայտնի մասնագետ **Մուրեյ Էյլանդը,** երբ 1988 թ. հրատարակված **Վիլյամ Իգլտոնի** «Քրդական գորգերի ու մյուս գործվածքների մասին» լայն ճանաչման արժանացած աշխատության գրախոսականում անդրադառնալով Քրդստանի ու ընդհանրապես Անատոլիայի գորգերի ծագումնաբանական հիմնախնդիրներին, շեշտել է, որ անատոլիական ու քրդական գորգերի ուսումնասիրողների մոտ եղած ամենացայտուն թերությունն այն է, որ չի ներկայացվում հայոց դերն ու նշանակությունը: Դա այն դեպքում, երբ գրախոսված աշխատության մեջ «**ներկայացված բոլոր գորգերը գործվել էին այն ժամանակ, երբ այդտեղ մինչ 1915 թվականը ապրում էին մեծ էթնիկ խմբեր՝ թուրքեր, քրդեր, հայեր: Իսկ քրդերն այդ ժամանակաշրջանում տեսանելի թիվ չէին կազմում**»[37]:

Ըստ իս, հայոց գորգագործական մշակույթի հանդեպ այդօրինակ վերաբերմունք ունեցողների համար հիմնական փաստարկն այն է, որ այդ տարածքները ներկայումս թուրքաբնակ կամ քրդաբնակ են: Ըստ էության կարևորվում է հատկապես այն իրողությունը, որ դրանց մոտ էլ պահվում են ուսումնասիրման ենթարկված գորգերն ու նմանօրինակ մյուս գործվածքները և բացի այդ էլ՝ քրդական ցեղերի մի մասը խնդրո առարկա տարածքներում վերջին տասնամյակներում էլ զբաղվում են գորգագործությամբ: Օրինակ՝ այդ տեսության ջերմեռանդ հետևորդ Մայքլ Վենդորֆը նկատի ունենալով այն, որ VI-V հազարամյակներին վերաբերող գործվածքի նմուշների հայտնաբերման վայրը՝ Չաթալ Հոյուկը գտնվում է այսպես կոչված Քրդստանի սահմաններում, հայտարարում է, որ դրանց ստեղծողները քրդերի նախնիներն են: Քրդական գործվածքը, ըստ այս ուսումնասիրողի, ունի ավելի քան ութ հազար տարվա պատմություն[38]:

Մենք չենք էլ կասկածում, որ առաջավորասիական գորգագործական մշակույթի համակարգում իրենց ներդրումն ունեն նաև քրդական ցեղերը:

Ինչքանով էր գորգագործական մշակույթը, սակայն, բնորոշ քրդական բոլոր ցեղերին ու ինչքանով էին նրանք զբաղվում ոստայնանկության այս կամ այն ոլորտով: XIX-XX դ. սկզբներին վերաբերող գորգերի ու կիրառական արվեստի այլ առարկաների ծագումնաբանության բացահայտման հարցում ինչ նշանակություն պետք է ունենա քրդերի կամ թուրքերի տներում դրանց գտնվելու հանգամանքը: Չէ որ հանրահայտ է, որ դրանց գերակշիռ մասը բազում ավարառությունների ու հատկապես 1915-1922 թվա-

---

[37] An introducti to Kurdish rugs and other weavings.Book Review bu **Murray L. Eiland** http://www.rugreview .com /orr/9-2-42.htm:

[38] **Michael Wendorf** Kurdish Rugs and Related Weavings - an 8000 Year Weaving Tradition? http:// www.turkotek.com/salon_00088/salon.htmlw: **William Eagleton**, The Emergence of a Kurdish Rug Type Oriental Rug Review, Vol. 9, No. 5 http://www.rugreview.com/95kurd.htm, նույնը՝ An introduction to Kurdish rugs and other weavings, Buckhrust Hill, 1988:

կաններին իրականացված Մեծ եղեռնի ընթացքում հայերից կատարված զանգվածային հափշտակումների արդյունքներն են: Եվ այս առումով շատ տիպական տվյալներ են պարունակում այդ տարածաշրջանում 1910-ական թվականներին լայն գործունեություն ծավալած քրիստոնեության բողոքական թևի ամերիկյան քարոզիչները՝ **«քրդական անկանոն ուժերը Ուրմիայի և շրջակա գյուղերի քրիստոնյաներից խլել են ամեն ինչ՝ սննդեղեն, գորգեր, հագուստ և ոսկյա զարդեր՝ վերցրել այն բոլոր տեղերից, որտեղ հանդիպել են, իսկ նրանց, ովքեր դիմադրել են թալանին, սպանել են կամ վիրավորել»**[39]: Քրիստոնյաններ բառը այս պարագայում նշանակում է միայն հայ, քանի որ գորգագործական մշակույթը հատուկ չի եղել ասորիներին, իսկ այլ քրիստոնյաններ Վասպուրականում և Ուրմիա լճի ավազանում չեն եղել: Բացի այդ էլ, վերը բերված տեղեկություններից մեկում, ինչպես տեսանք, ասվում է, որ քրդաբնակ մի շարք տարածքներում՝ մասնավորապես Աբաղայում, քրդերի համար տնային գործածության առարկաներ՝ այդ թվում գործվածքեղեն պատրաստելու պարտականությունը դրված էր նրանց ենթակա հայկական տնտեսությունների վրա[40]:

Այսպիսով ակնհայտ է, որ Վասպորականի գորգագործական կենտրոններում գործված գորգերի ու կարպետների էթնիկական պատկանելիության բացահայտման հարցում քրդերի ու թուրքերի մոտ դրանց գտնվելու պարագան զուրկ է ծագումնաբանական ոլորտին վերաբերող որևէ նշանակությունից: Ուստի՝ ժողովրդագրական ու աշխարհաքաղաքական գործընթացների այսպիսի իրավիճակը թույլ է տալիս մեզ Վասպուրականի ու համանման նկարագիր ունեցող հայոց մյուս գորգագործական կենտրոններին բնորոշ գորգերի տիպերի բացահայտման հարցում որպես սկզբնաղբյուր դիտարկել նաև քրդական ու թուրքական ցեղերին վերագրված գորգերն ու կարպետները:

Ասվածներից զատ՝ պետք է հաշվի առնվի նաև այն հանգամանքը, որ հարակից էթնիկական տարրերի մոտ առանձնահատկությունների հետ միասին առկա են լինում դարավոր հարևանության ու մշակութային փոխհարաբերությունների արդյունք հանդիսացած բազմաթիվ զուգահեռներ: Ամեն դեպքում, անտարակույս է, որ միևնույն միջավայրում դարեր ի վեր ապրած էթնիկական տարրերի փոխհարաբերություններն այն աստիճան են փոխկապակցված, որ չափազանց դժվար է դրանց բնորոշ մշակութային տարրերի տարբերակումը, մանավանդ, որ քրդերի թվումն են նաև դարերի ընթացքում տասնյակ հազարավոր քրդացած ու կրոնափոխ եղած հայեր: Ասենք, որ այս պարագան հավասարապես վերաբերում է նաև **«թուրքական»** համարվող մշակութային արժեքներին: Այսպիսով, Վասպուրականի հարավ-արևելյան և ընդհանրապես Արևմտյան Հայաստանի գորգագործա-

---

[39] American Presbyterian Missionaries at Urmia, During the Great War, **Michael Zirinsky**, Ph.D, էջ 13 http://www.jaas.org/edocs/v12n1/zirinsky.pdf:

[40] **Ա.-Դօ,** 277:

կան կենտրոններում գործված գորգերը այս կամ այն էթնիկական հանրույթին վերագրելու հարցում առաջին հերթին անհրաժեշտ են տարածաշրջանի գորգագործական կենտրոններին վերաբերող գորգերի տեխնոլոգիական ու գեղազարդման տարրերի՝ այդ թվում գունաերանգների բազմակողմանի ուսումնասիրություններ: Այսինքն, այստեղ հնարավոր չէ առանց հիմնավոր սկզբնաղբյուրների մինչ 1915-22 թվականները գործված և Իրանի հյուսիս-արևմտյան տարածաշրջաններին ու Օսմանյան Թուրքիայի տարածքում եղած բոլոր հայաբնակ վայրերին վերաբերող գորգերն ու կարպետները այս կամ այն էթնիկական հանրույթին վերագրել, ինչպես դա արել են և անում են արտերկրի ուսումնասիրողներից շատերը: Այս տեսանկյունից դատելով, կարելի է եզրակացնել, որ դրանք մեծ մասամբ անծանոթ են տարածաշրջանի պատմությանն ու աչքաթող են անում հայ հանրույթի առկայությունը: Մինչդեռ, այդ տարածաշրջանների բնիկ ժողովուրդներից հիմնականը հայ ժողովուրդն էր, որն ինչպես վկայում են սկզբնաղբյուրները, սկսած վաղագույն ժամանակաշրջաններից, տիրապետում էր գորգագործական մշակույթի բոլոր գաղտնիքներին ու մինչ 1915-20 թվականները նշված տարածաշրջաններում ակտիվորեն շարունակում էր իր այդ ավանդույթը[41]:

Այս առումով էլ հարկ ենք համարում անդրադառնալ Վիլյամ Իգլտոնի ուսումնասիրությանը: Նա նկատել է, որ քրդերի մոտ եղած XIX դ վերջերին ու մինչ 1920 –ական թվականներին վերաբերող գորգերի գունային երանգներում գերիշխողը կարմիրն ու կապույտն են, որոնցից կարմիրը ստացված էր տորոնից: Նա այդքանի հետ միասին նաև շեշտում է, որ որ քուրդ կանանց մոտ առավել հարգին վարդագույնն ու նարնջագույնն են[42]: Ընդ որում, դա հստակորեն դիտարկվում է նաև իր իսկ հրապարակած նմուշների մի մասի գունային համակարգում՝ դրանցում հիմնականը նարնջագույնն է և ընդհանրապես դեղնավունի երանգները, սալորագույնը, վարդագույնը, շագանակագույնը[43]: Իգլտոնի դիտարկումներն ու իր իսկ կողմից ներկայացված քրդական գորգերը հաստատում են մեր այն տեսակետը, որ քրդերի մոտ կուտակված ու XIX-XX դարի սկզբներին վերաբերող գորգերի ու կարպետների գերակշիռ մասը իրականում պատկանում է հայոց գորգագործական մշակույթին: Կարծում ենք, եթե արտերկրի գորգագետների ճնշող մեծամասնությունը տեղյակ չէ խնդրո առարկա տարածաշրջանի պատմությանն ու հարակից գիտություններին, ապա մենք չենք պատկերացնում, որ Մերձավոր Արևելքի մի շարք երկրներում տասնյակ տարիներ շարունակ ԱՄՆ դեսպան հանդիսացած դիվանագետը անտեղյակ էր դրա

---

[41] **Պողոսյան Ա.**, 2008, ԺԲ, 63–79:

[42] Kurdish Carpet and Kelim by **William Eagleton,** տես՝ http://rugnotes.blogspot.com /2005/04/kurdish-carpet-and-kelim-by-william.html:

[43] Տես օրինակ՝ **William Eagleton,** The Emergence of a Kurdish Rug Type Oriental Rug Review, Vol. 9, No. 5 http: //www. rugreview.com/ 95kurd.htm, նկ. 2 ,3, 5:

աշխարհաքաղաքական նկարագրին վերաբերող անցուղարձերից ու ժողովրդագրական գործընթացներից: Ուղղակի այս հետազոտողը միտումնավոր անտեսել է հայոց պատմական ներկայությունը Արևմտյան Հայաստանում ու Վանա և Ուրմիա լճերի ավազաններում:

Որոշ գորգագետների այսպիսի ակնհայտ միակողմանի մոտեցումն ու ընդհանրապես հայոց կողմից առաջավորասիական, փոքրասիական ու կովկասյան գորգագործական կենտրոններում ունեցած ներդրումների թերագնահատման կամ անտեսման փաստը, ինչպես նաև դրանց նշանակության մասին անբավարար պատկերացում ունենալը նկատել են նաև արտերկրի մի շարք ուսումնասիրողներ ևս, մասնավորապես Յան Բեննետը[44], Մուրեյ Էյլանդը[45], Ֆիլբերտո Բոնկոմպագնին[46], Ստիվեն Պրայզը[47], Ջիմ Ալենը[48], Բրայան Մորեհաուզը[49] և ուրիշներ:

Ինչ վերաբերում է խնդրո առարկա տարածաշրջանների հայոց ու քրդական գորգերի տարբերակման հարցին, ապա այստեղ առաջնային նշանակություն ունի դրանց տեխնոլոգիական ու գունաերանգային առանձնահատկությունների բացահայտումը: Այս առումով հայտնի է, որ որոշակի տարածաշրջանների, օրինակ Բագրևանդի, Բերկրիի ու Բայազետի՝ այսինքն Արևմտյան Հայաստանի կենտրոնական տարածաշրջանների ու Վասպուրականի արևելյան ու հյուսիս-արևելյան գավառների քրդական գորգերն ու կարպետները բնորոշվում են գունային երանգներում գազարագույնի, դեղնավունի ու նարնջագույնի գերակշռությամբ[50]: Աղձնիքում, մասնավորապես Բաղեշում ու մերձակա տարածքներում, որտեղ հատկապես հիմնավոր էին իրենց զգում քրդական ցեղերը, XVII դ. թուրք ուղեգիր Էվլիա Չելեբին ներկայացնելով նրանց առանձնահատկությունները, նշել է, որ «այդ երկրին հատուկ է դեղնագույն ներկը[51]: Վերը հիշատակված տնայնագործական համագումարում, հայ նշանավոր արվեստաբան Գարեգին Լևոնյանը անդրադառնալով քրդական գործվածքների գունային առանձնահատկություններին, նույնպես շեշտել է դրանց միջոցով այդ գործվածքները տարբերակելու հնարավորությունը[52]: Քրդական գորգերին դեղնավուն ե-

[44] **Йан Беннет, Малькольм Хазлан,** 2003, 158–159:

[45] An introducti to Kurdish rugs and other weavings.Book Review bu **Murray L.Eiland** http://www.rugreview .com /orr/9-2-42.htm:

[46] **Filiberto Boncompagni,** Of Carpets and Paintings /Posted by on 01-05-2002 11:44 PM:http: //www. turkotek. com/salon_00080/t2s80.htm/:

[47] http://www.turkotek. com/ misc _00090 /anatolian_turkmen.htm:

[48] Armenian Rugs Without Inscriptions by: Jim Allen՝ տես http://www.kunstpedia.com/articles /armenian-rugs-without-inscriptions.html:

[49] http://www.turkotek.com/misc_00090/anatolian_turkmen.htm:

[50] Տես՝ **Kurdish Rugs and Related Weavings - an 8000 Year Weaving Tradition?by Michael Wendorf,** http://www.turkotek.com/salon_00088/salon.html:

[51] **Էվլիա Չելեբի**, 1967, 200:

[52] **Լեոնեան Գ.,** 1909, 219–234:

րանգների բնորոշ լինելու մասին, ինչպես տեսանք, տեղեկացնում է նաև Իգլտոնը: Անշուշտ, դեղնավունն ու դրա երանգները տեղ են գտել նաև հայոց բնորոշ գորգերի գունային համակարգում, սակայն դրանք ներկայացված են չափավոր սահմաններում ու գերիշխող չեն մյուս գույների նկատմամբ: Բնականաբար, տարբերակումների համար շատ կարևոր են նաև հայոց գորգերին բնորոշ գույների մասին սկզբնաղբյուրներում եղած տեղեկությունները: Մասնավորապես, Վասպուրականի գործվածքների գունաերանգների մասին նշվում են «բաց կապույտ, մուգ կապույտ, լաջվարթ, մանիշակագույն, զեյթունի գույն, սրճագույն, սև, դեղին գույները»[53]: Բնականաբար, որպես տարբերակիչ գործոն է նաև գեղազարդման համակարգում տեղ գտած զարդերի ու հորինվածքների մատուցման առանձնահատկությունները:

Քրդերի գործած գորգերի առանձնահատկություններից է նաև դրանց գեղազարդման համակարգում երկրաչափական խոշոր, կեռիկազարդ հորինվածքների առկայությունն ու գործվածքի որակական ցածր հատկանիշները: Այդ գործոնները նույնպես թույլ են տալիս որոշակի տարածաշրջանների դեպքում տարբերակել հայոց ու քրդական գործվածքները[54]:

Հարավ-արևելյան Վասպուրականի, ինչպես նաև դրանց մերձակա Սոուջբուլաղի քրդական գորգագործական կենտրոններին վերաբերող գորգերի գեղազարդման համակարգերը, դատելով հրապարակված նմուշներից, աչքի են ընկնում նաև բուսածաղկային ու ավելի մանր երկրաչափական զարդերով և գունային համեմատաբար ներդաշնակ գունաերանգներով: Այս վերջին դեպքում է, որ չափազանց դժվարին է դառնում հայոց ու քրդերի գործած գորգերի տարբերակումը՝ մանավանդ, նկատի ունենալով այն հանգամանքը, որ այդ տարածաշրջանը համարվում էր Պարսկաստանի առավել հոծ հայ բնակչություն ունեցողներից մեկը[55]: Սա նաև այն տարածաշրջաններից է, ուր հայ հանրույթը ակտիվորեն է զբաղվել գորգագործական մշակույթով ու դրա վկայությունները բազմատեսակ են՝ դրանցից մեկն էլ տեղի Ռահվար հայաբնակ գյուղի գերեզմանոցի տապանաքարերից մեկն է /**նկ. 1**/[56]:

Գորգերի տարանջատմանետ կապված այսպիսի խնդիրները առկա են նաև պատմական Հայաստանի բազմաթիվ այլ տարածաշրջանների՝ մասնավորպես Դերսիմի գորգագործական կենտրոններին, որտեղ, ինչպես նշել են ականատեսները, XX դ. սկզբներին հայերն ու քրդական ցեղերի մի մասը գործում էին առաջնակարգ գորգեր ու կարպետներ[57]:

---

[53] **Պողոսյան Հ.**, 46:

[54] http://www.turkotek.com/salon_00087/salon.html:

[55] **Շերմազանյան Գալուստ**, 1890, 110:

[56] **Gregorian T. Arthur, Gregorian Joyce Hampshire**, 1987, 9:

[57] **Պողոսյան Ա.**, 2012 , Ա, 59, 63, 64:

Տեխնոլոգիական ոլորտում էլ տարբերություններից կարևորը քրդերի մոտ երկուսից ավել միջնաթելերի օգտագործման ավանդույթն էր ու գործվածքի ընդհանուր կոպտությունը: Առանձնահատկություններ կան նաև գորգի եզրային փաթույթների հյուսվածքում՝ դրանք արվում են համեմատաբար հաստ թելերով և գորգի ընդհանուր հյուսվածքին ամրացվում են 6-10 հենքաթելերի շարք ընդգրկող խորությամբ: Անշուշտ, ասվածները չեն վերաբերում քննարկվող տարածաշրջանի գորգագործական բոլոր կենտրոններին, մանավանդ մեր պարագայում, երբ բացակայում են դաշտային ազգագրական նյութերն ու ծագումնաբանական հավաստի տվյալներ ունեցող գորգերի նմուշները:

**Վասպուրականի հարավային ու հարավ-արևելյան գավառներին բնորոշ գորգերի տիպերի մասին:** Ելնելով վերն ասված սկզբունքներից, փորձենք անդրադառնալ Վասպուրականի մեզ հետաքրքրող գորգագործական կենտրոններին վերագրված գորգերի ծագումնաբանական ու տիպաբանական խնդիրներին: Դրանք աչքի են ընկնում գեղազարդման համակարգերի բազմազանությամբ, թեև ըստ էության, ակնհայտորեն գերակշռում են բուսածաղկային ու երկրաչափական խոշոր հորինվածքները: Բուսական ու բուսածաղկային հորինվածքներով գորգերի տարածման հարցում որոշակի նշանակություն է ունեցել Պարսկաստանի գորգագործական կենտրոնների հետ եղած սերտ շփումները: Կարևոր հանգամանք էր նաև այն իրողությունը, որ Սեֆյանների պալատական արհեստանոցներում /ինչպիսին որ նաև Օսմանյան պալատում էր/ մեծ տոկոս էին կազմում հայ գորգագործ մասնագետները, որոնք այսպես թե այնպես կապված էին Պարսկաստանի հայաբնակ վայրերի հետ, որոնց թվումն են Ուրմիա լճի ավազանի շուրջ եղած հայոց գորգագործական կենտրոնները: Այս պարագայի առումով, ավելորդ չեմ համարում շեշտել նաև այն, որ արևմտյան և հյուսիս արևմտյան Պարսկաստանի գորգագործական կենտրոններում հայոց բնորոշ կրկնակի հանգույցը հայտնի էր «**արմանի բաֆ**»/այսինքն հայկական աշխատանք կամ **«հայկական հանգույց»** ԱՊ/ անվանումով[58]: Իրանցի մասնագետներն այդ ամենը բացատրում են նրանով, որ «այդ գորգագործների նախնիները XVII դ. Կովկասից և Հայաստանից Իրան ներգաղթած հայերն են, որոնք էլ վերոհիշյալ գորգագործական կենտրոններում, մասնավորապես Մալահերում ու մերձակա բնակավայրերում գործել են առավելապես «**Հերաթ**» /մեր տարբերակումով՝ «**Գլաձոր**»/ զարդով գեղազարդված գորգեր[59]: Հայկական հանգույցով գորգեր գործելու ավանդույթը, բացի վերոհիշյալ գորգագործական կենտրոններից, նկատելի տեղ է զբաղում նաև Սուլթանաբադում, Անջիլասում, Լիլահանում, ինչպես նաև Ուրմիա լճի շրջակայքի գորգագործա-

---

[58] **Javad Nassiri M.**, 2002, 25: **Ավ. քահանա Եղզարեան,** 1963, 32:

[59] **Javad Nassiri M.**, 2002, 25:

կան կենտրոններում՝ Մարաղայում, Ուրմիայում, Սալմաստում, Մարանդում և այլն[60]:

Այսպիսով, հիմք ունենալով Ուրմիա լճի ավազանի և Վասպուրականի արևելյան ու հարավ արևելյան գորգագործական կենտրոններին վերաբերող պատմազգագրական ու ժողովրդագրական բոլոր հատկանիշները, կարող ենք ներկայացնել տարածաշրջանում լայն տարածում ունեցած գորգերի մի շարք տիպեր, որոնք նաև կազմում են հայոց գորգագործական մշակույթի բաղկացուցիչ մասն ու հայտնի են նաև պատմական Հայաստանի մյուս գորգագործական կենտրոններում: Այստեղ մենք չենք անդրադառնալու համահայաստանյան տարածում ունեցած գորգերի տասնյակ այն տիպերին, որոնք բնականաբար գործում էին նաև խնդրո առարկա գորգագործական կենտրոններում: Մենք ներկայացնում ենք միայն այն տիպերը, որոնց տարածման հիմնական կենտրոնների թվում նաև դրանք են, կամ էլ մեր ունեցած տեղեկությունների համաձայն դրանց ավանդույթների ձևավորման վայրերն են:

**ա/ Բուսածաղկային հորինվածներով բնորոշվող գորգեր:**

**«Աղբակ» տիպ:** Բազմաթերթ վարդակներով գեղազարդված գորգերն են, որոնք հայտնի են բազմաթիվ տարբերակների տեսքով: Դրանք մասնագիտական գրականության մեջ տարբերակված են զանազան անվանումներով՝ «Ավշան», «Հաքյարի», «Համադան» և այլն: Մեր տիպաբանության համակարգում այն տարբերակել ենք **«Աղբակ»** ընդհանրացված անվանումով, նկատի ունենալով այդ տիպի ու դրա տարբերակների Վասպուրականի արևելյան գավառներին ու մասնավորապես այդ գավառի գորգագործական կենտրոններին բնորոշ լինելը: Այս գորգերի մի շարք տարբերակների գեղազարդման համակարգում կարևորված է նաև **«Շահ Աբաս»** վարդակը: Այս տիպին պատկանող գորգերը բնորոշվում են գունային երանգների ու հորինվածքների հաջող ներդաշնակությամբ, ինչպես նաև խոշոր չափերով: Աղբակի, Սալմաստի ու նաև Սոուջբուլաղի կամ Մահաբաղի գորգագործական կենտրոններում տարածում ունեցած այս տիպը, գորգերի ու կարպետների այլ տիպերի հետ միասին XIX դ. երկրորդ կեսերին լայն տարածում է ստանում նաև Վայքում, որտեղի նմուշների հիման վրա էլ հանգում ենք հիշյալ եզրակացություններին[61]: Նմանօրինակ XIX դ. առաջին կեսին վերաբերող մի նմուշ պահվում է Մայր Աթոռ Սուրբ Էջմիածնի «Գանձատուն» թանգարանում/ **նկ. 2**/[62]: Ըստ էության, խնդրո առարկա տարածաշրջաններին բնորոշ մի օրինակ էլ կարելի է համարել նաև Ալբերտո Լեվիի հավաքածուի գորգերից մեկը, որը գործված է XIX դ. կեսերին, վերաբերում է Սոուջբուլաղի գորգագործական կենտրոններին և ինչպես նշել է Լևին, ու-

[60] **Eric Aschenbrenner**, 1995, 8,12,14,40,48.59,74:

[61] **Պողոսյան Ա.**, 1984, 73–74:

[62] Մայր Աթոռ Սուրբ Էջմիածնի «**Գանձատուն**» թանգարան, գորգի ֆոնդ, № 60:

նի քրդական գորգերին բնորոշ գեղազարդման մանրամասեր ու դեղին հիմնագույն[63]:

«**Կենաց ծառ»** տիպ: Նույնպես հայտնի է բազմաթիվ տարբերակների տեսքով: Վասպուրականի այս գորգագործական կենտրոններում լայն տարածում ունեին հատկապես «կենաց ծառ» ճյուղատարած խոշոր հորինվածքներով գեղազարդված գորգերը: Դրանց մասին պատկերացում կազմելու հարցում տիպական նմուշ կարող է հանդիսանա Շարամբեյան կենտրոնի Հայաստանի Ժողովրդական արվեստի թանգարանում պահվող գորգը, որն իր կատարման տեխնոլոգիաներով միանգամայն համապատասխանում է Աղբակ-Ուրմիա լճի ավազան տարածաշրջանների գորգագործական ավանդույթներին **/նկ. 3**/[64]: Դա կապույտ հիմնագույնով է ու ամբողջությամբ ծածկված է ճյուղատարած կենաց ծառի կանոնավոր շարքերով: Ի դեպ այդ նույն թանգարանում պահվում է նաև նմանատիպ մեկ այլ գորգ, որի գեղազարդման համակարգի գունային երանգներն ու մանավանդ լայն եզրագոտու գազարագույնն ու նաև արաբական թվանշաններով թվագրված լինելը ենթադրում դրա այդ նույն տարածաշրջանից լինելն ու նաև քրդական ծագումը:

Խնդրո առարկա տարածաշրջաններին բնորոշ ու **«կենաց ծառ»** հորինվածքով գեղազարդաված գորգերի մի տարբերակում էլ այդ նախշերը ներկայացվում են շրջանակներում ամփոփված տեսքով: Մեր ձեռքի տակ եղած նմուշները՝ Հայաստանի ժողովրդկան արվեստի ու Հայաստանի ազգագրության պետական թանգարանում պահվող երկու գորգ, որոնք գործել են XIX դ. վերջին ու XX դարի սկզբներին, թույլ են տալիս շեշտել, որ դրանք ըստ էության վերաբերում են գորգագործական առավել հարուստ ու զարգացած ավանդույթներ ունեցող կենտրոններին, որպիսինն էին պատմական Աղբակն ու նրան մերձակա գավառները, հատկապես Սալմաստը /**նկ**.4/[65]:

Գորգերի գեղազարդման այս սկզբունքը բավականաչափ լայն տարածում ուներ պատմական Հայաստանի արևելյան նահանգների գորգագործական կենտրոններում՝ մասնավորապես Վասպուրականի հյուսիս-արևելյան, ինչպես նաև Նախիջևանի, Գողթան գավառի, Վայքի գորգագործական կենտրոններում: Կենաց ծառի այդ տարբերակով գեղազարդված գորգեր հայտնի էին նաև Արցախի, ինչպես նաև Շամախու գորգագործական կենտրոններում: Ըստ էության, այս դեպքում դժվար է հետևել դրա արեալային տարածման գործընթացներին, սակայն ակնհայտն այն է, որ այդ գորգերն իրենց եզրագոտիների ու գեղազարդման հիմնական հորինվածքի

---

[63] Alberto Levi, 'Renewal and Innovation: Iconographic Influences on Kurdish Carpet Design', Hali, vol. 15, no. 4 (London, August - September 1993): 84–93.

[64] Հ. Շարամբեյան կենտրոն, Հայաստանի ժողովրդական արվեստի թանգարան, գ/հ 10548: Ուրմիա լճի ավազան- Աղբակ, Գողթան գավառ, XIX դ., բուրդ, 280*165:

[65] Հայաստանի ազգագրության պետական թանգարան, գորգի ֆոնդ, գ/հ 6938/19:

մանրամասերի առումով առավել բնորոշ են Վասպուրականի հյուսիս-արևելյան գորգագործական կենտրոններին:

**«Նշանախշով»** տիպ: Հայտնի է տասնյակից ավել տարբերակներով ու տարածված է գորգագործական բոլոր կենտրոններում: Այս դեպքում մենք նկատի ունենք քիչ երկարավուն, մանր վարդակներով, կամ վանդակներում ամփոփված խաչազարդով երիզված նշանախշով գեղազարդված գորգերը: Հայաստանի թանգարաններում ներկայացված ավելի քան մեկ տասնյակ նմուշներից, խնդրո առարկա տարածաշրջաններին է վերաբերում Հայաստանի պատմության թանգարանում պահվող այս նմուշը **/նկ. 5**/[66]: Այն գործել են 1880-ական թվականներին Վայքի Շատին գյուղում, որի բնակիչները Սալմաստից տեղափոխված հայերն են:

**«Շեղանկյունազարդով»** բնորոշվող գորգեր: Հայոց գորգագործական մշակույթի գեղազարդման համակարգում ավանդական են ու մեծ տեղ ունեն երկրաչափական խոշոր զարդերից կազմված հորինվածքները, մասնավորապես կեռիկներով կամ սղոցատիպ ատամներով երիզված շեղանկյունատիպ ու բազմանիստ զարդերից կազմվածները: Դրանք հավասարապես բնորոշ են նաև կարպետների գեղազարդման համակարգին ու նկատի ունենալով, որ դրանք հատկապես լայն տարածում են ունեցել խնդրո առարկա տարածաշրջանների հայոց գորգագործական կենտրոններում, ինչպես նաև քրդական տարրերի միջավայրում, հարկ ենք համարում քիչ ավելի հանգամանալից անդրադառնալ այդօրինակ հորինվածքներով գեղազարդվածներին:

Այսպիսի գորգերը մեծ խումբ են կազմում ու դրանում ներառված են տասնյակից ավել գորգերի տիպեր: Նշենք, որ սա այն խմբերից է, որին վերաբերող մի նմուշ պատկերված XI դարին պատկանող Կարսի ավետարանի մանրանկարներից մեկում **/նկ. 6**/[67]:

Գեղազարդման այս տարրը Վասպուրականի մեզ հետաքրքրող գորգագործական կենտրոններում առավել լայն տարածում ունեցողներից է, լինում է կեռիկազարդ ու սղոցատիպ եզրերով և հանդիսանում է տվյալ գորգի գեղազարդման հիմնական տարր: Դրանք պատկերվում են մեկ կամ մի քանի շարքերով ու ինչպես նախորդ դեպքերում էր՝ բնորոշվում են գունային երանգների ու տեխնոլոգիական հատկանիշների տեղական առանձնահատկություններով: Այս հորինվածքների սղոցատիպ եզրերով տարբերակվող գորգերի մեր տիպաբանությամբ **«Ճարտար»** անվանակոչված տիպը չափազանց լայն տարածում ուներ Արցախի, Սյունիքի, Ուտիքի և Ղարաղաղ-Արաքսպարի գորգագործական կենտրոններում: Ըստ հրապարակված նմուշների, այն հայտնի էր նաև Վասպուրականի հարավ արևելյան ու ընդհանրապես Ուրմիա լճի ավազանի գորգագործական կենտրոններում: Այստեղ դրանք առանձնանում են շեղանկյունազարդերի գեղա-

[66] ՀՊԹ, գ/հ 8433:

[67] **Измайлова Т.А.**, 1979, պատկեր 136:

զարդման համակարգի ու դրանց մանրամասերի մատուցման առանձնահատկություններով՝ շեղանկյուն շրջանակում բացակայում են խաչաձև դասավորվածությամբ ներկայացված վարդակները:

Այս հորինվածքի կեռիկներով եզրագծված տարբերակով գեղազարդված գորգերն ու մանավանդ կարպետները բնորոշ են նաև քրդական գորգագործական կենտրոններին: Այստեղ ներկայացված նմուշը ակնհայտորեն կրում է քրդական գորգագործական մշակույթին բնորոշ գունային հատկանիշներն ու այդ առումով թույլ է տալիս մեզ որոշակի հստակություն մտցնել խնդրո առարկա գորգագործական կենտրոններում գործված նմանատիպ գորգերի ծագումնաբանական հարցերում **/նկ. 7**/: Ընդ որում, ի տարբերություն սղոցատիպ եզրերով շեղանկյունատիպ հորինվածքի, այս վերջինս համընդհանուր տարածում ունի հայոց ու քրդական գորգագործական կենտրոններում: Այս խմբին վերաբերող մի շատ ուշագրավ նմուշ է Վիլյամ Իգլետոնի սեփականություն հանդիսացող գորգը, որն ըստ հեղինակի տված տեղեկությունների, ձեռք է բերվել Սղերդում:

Այս, ինչպես նաև բազմանիստ հորինվածքի մեկ կամ մի քանի շարքերով գեղազարդված կարպետները Շիրակի, Արագածոտնի, Բագրևանդի քրդերի մոտ տարբերակվում են «**արմանի», «ամանի» ու «յամանի»** անվանումներով: Դրանք բոլորն էլ, ըստ Շիրակում և Արագածոտնում մեր դաշտային հետազոտությունների ընթացքում քրդերի տված մեկնաբանություններին՝ նշանակում են հայկական[68]:

**«Խաչազարդով»** տիպ: Այս տարածաշրջաններին բնորոշ գորգերի թվում հատկապես ուշագրավ են խաչազարդով բնորոշվողները: Այս առումով մենք առանձնացնում ենք մասնագիտական գրականության մեջ Իրանի հյուսիս-արևմտյան տարածաշրջանների բախտիարաբնակ գորգագործական կենտրոններին վերագրվող մի տիպ **/նկ.8** /, որին տեղայնացնում են նաև Ուրմիա լճի ավազանի հարավային ու հարավ արևելյան մասերում՝ Սոուջբուլաղում: Այս տիպի գորգերի գեղազարդման համակարգի հիմնական տարրը հավասարաթև խաչն է՝ շեղանկյունատիպ շրջանակում ամփոփված տեսքով: Ընդհանրապես՝ խնդրո առարկա գորգագործական կենտրոններում, ըստ էության, չափազանց հարգի էր այս զարդն ու այն մատուցվում էր ինչպես հիմնական հորինվածք, այնպես էլ լրացուցիչ՝ սակայն ակնառու տեղ գրավող գեղազարդման տարր: Տրամաբանորեն պետք է հասկանալի լինի, որ խաչազարդի ներկայությունը իսլամ դավանող էթնիկական տարրերի մշակութային համալիրներում թեև ուներ սոսկ զարդի նշանակություն, այնուամենայնիվ, անընդունելի էր այդ տարրերի կրոնական առաջնորդների համար, մանավանդ այն դեպքերում, երբ դրանք հանդես են գալիս որպես հիմնական հորինվածք: Ասվածի առնչությամբ ուշագրավ է խաչազարդով գեղազարդված գորգի մի նմուշ, որը հրապարակել է Մայքլ Վենդորֆը **/նկ.9**/: Այստեղ սղոցատիպ եզրերով բազմանիստում ամ-

---

[68] **Պողոսյան Ս.**, ԴԱՆ, տ. 2, 98: **Пиралов А. С.**, 1913, 65.

փոփված խաչազարդ հորինվածքների արանքներում գորգագործուհին գործել է նաև հայերեն մի քանի տառ՝ գուցե իր անուն ազգանվան սկզբնատառերը, սակայն այդուհանդերձ, այստեղ էականը դրանց առկայությունն է, որը հաստատում է դրանց ակունքներում հայ հանրույթի ներկայության փաստն ու նաև այն՝ որ քրդական վերնախավի համար անհրաժեշտ գորգերի մի մասը գործել են նրանց մոտ ծառայության եղած հայուհիները[69]: Ընդհանրապես, հավասարաթև խաչազարդով գեղազարդված գորգերն, ըստ էության, հայոց գորգագործական մշակույթին բնորոշ հնամենի տիպերից են ու դրա վկայություններն էլ XI-XIII դարերին վերաբերող ձեռագրերի մանրանկարներում եղած խորանազարդ գորգապատկերներն են: Այդ առումով փայլուն նմուշ է 1211 թվականին գրված Հաղպատի Ավետարանի Ղուկասի ավետարանի անվանաթերթի խորանազարդ գորգը /**նկ.10**/[70]: Գորգերի այս տիպը պատմական Հայաստանում ուներ համընդհանուր տարածում ու դրանց վերաբերող հայատառ, թվակիր գրություններով նմուշներ պահվում են Հայաստանի թանգարաններում /**նկ11**/[71]: Կարևոր է, որ դրանց մի մասը, մասնավորապես այստեղ ներկայացված 1844 թվականին գործված նմուշն իր գունային ու տեխնոլոգիական հատկանիշներով առավել բնորոշ է Վասպուրականի արևելյան և Զանգեզուրի գորգագործական կենտրոններին: Հաշվի առնելով մեր այս դիտարկումները, կարծում ենք, որ այս տիպի գորգերի առկայությունը Իրանի հյուսիս արևմտյան գորգագործական կենտրոններում ի հակակշիռ ընդունված տեսակետների՝ մասնավորապես Մայքլ Վենդորֆի և Մարլա Մալետի պնդումներին, պետք է համարել տեղի հայերի գորգագործական մշակույթի արդյունք[72]:

**«Մեմլինգ»** տիպ: Մեզ հետաքրքրող տարածաշրջանների գորգագործական կենտրոններին բնորոշ տիպերից մեկն էլ **«Մեմլինգ»** տիպի գորգերն են: Սա փոքրասիական ու պատմական Հայաստանի գորգագործական կենտրոններում համընդհանուր տարածում ունեցած տիպերից է ու ամենուր ուներ իրեն բնորոշ հիմնական հորինվածքի, լրացուցիչ մանրամասների մատուցման ու գունաերանգային առանձնահատկություններ: Որպես քրդական գորգ հրապարակված նմուշները հիմնականում վերաբերում են Սուլջբուլաղի /**նկ 12**/[73], Վասպուրականի հարավ արևելյան գավառների, Սղերդի ու Դերսիմի գորգագործական կենտրոններին ու այս դեպքում ևս դրանցում կարել է բացահայտել զուտ քրդական ավանդույթներին բնորոշ-

---

[69] http://www.turkotek.com/salon_00088/s88t3.htm, Posted by **Richard_Tomlinson** on 08-16-2002 09:10 AM:

[70] Հաղբատի ավետարանը, 2012, 49:

[71] Հայաստանի ազգագրության պետական թանգարան, գործվածքի ֆոնդ, գ/հ 3665:

[72] **Michael Wendorf,** Kurdish Rugs and Related Weavings - an 8000 Year Weaving Tradition? , **Marla Mallett,** Technique Generated Designs and their Mutant Offspring http://www.marlamallett.com/ archetyp.htm:

[73] http://rugrabbit.com/Item/nice-kurdish-memling-gul-runner-c1900-great-saturated-natural-dyes-and-excellent-original-condi

ներն ու դրանք տարանջատել հայոց վերաբերողներից: Ամեն դեպքում, հատկանշականն այն է, որ այդ տարածքներում ստեղծված այդ տիպի գորգերը տեխնոլոգիական ու գեղարվեստական հատկանիշներով զիջում են Հայաստանի հյուսիս արևելյան գորգագործական կենտրոններում գործվածներին:

Ամփոփելով վերն ասվածներն ու հենվելով եղած փաստարկներին, կարող ենք եզրակացնել, որ պատմական Հայաստանի Վասպուրական նահանգի հարավ արևելյան ու արևելյան տարածաշրջանների գորգագործական կենտրոններում պահպանվել են հայոց գորգագործական մշակույթի հնամենի ավանդույթները: Դրանք կրելով պատմական Հայաստանում ծավալված ու բազում դարեր շարունակված աշխարհաքաղաքական գործընթացների ազդեցությունը, նաև հսկայական ազդեցություն են թողել քրդական ցեղերի գորգագործության վրա: Ըստ այդմ էլ՝ այդ ավանդույթների հետագա ուսումնասիրումը հնարավորություն կտա առավել ամբողջական պատկերացում ստանալ հայոց գորգագործական մշակույթի ընդհանուր պատկերի մասին ու միաժամանակ բացահայտել տարածաշրջանում քրդական գորգագործական մշակույթի իրական դերն ու նշանակությունը:

## ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ

**Աղոնց Ն.,** – 1996, Հայկական հարցը, հատոր Ա, Եր., 1996:
**Աղոնց Ն.**, – 1987, Հայաստանը Հուստինիանոսի դարաշրջանում, Եր., 1987:
**Ա-դօ**, – 1912, Վանի, Բիթլիսի և Էրզրումի վիլայեթները, Երևան, 1912:
**Ալպոյաճեան Ա.**, – 1950, Պատմական Հայաստանի սահմանները, Կաhիրե, 1950:
**Ավ. քահանա Եղգարեան,** – 1963, Իրանի Չհարմհալ գավառը, Թեհրան, 1963:
Աշխարհագրութիւն չորից մասանց աշխարհի, աշխատասիրութեամբ հայր **Ղուկաս Վարդապետի Ինճիճեան**, Ասիա, հատ. Ա., ի Վենետիկ, 1806:
**Բայբուրդյան Վ.**, – 2008, Քրդերը, հայկական հարցը և հայ-քրդական հարաբերությունները պատմության լույսի ներքո, Եր., 2008:
**Դավթյան Ս.**, – 1981, Դրվագներ հայկական միջնադարյան կիրառական արվեստի պատմության, Եր., 1981:
Դիվան հայոց պատմության, Նոր շարք, գիրք առաջին, **Ղուկաս Կարնեցի**, հատոր Ա, 1780-1785, աշխատասիրությամբ Վարդան Գրիգորյանի, Եր., 1984:
**Էվլիա Չելեբի**, – 1967, Ուղեգրություններ .- Թուրքական աղբյուրներ, Գ, թարգմ. բնագրից, առաջաբան և ծանոթագր. Ա.Խ. Սաֆրաստյանի, Եր., 1967:
**Էփրիկյան Հ.Ս., –** 1903, Պատկերազարդ բնաշխարհիկ բառարան, Ա, Վենետիկ, 1903:
**Թեմուրճյան Վ., –** 1955, Գորգագործությունը Հայաստանում, Եր., 1955:
**Թոխմախյան Արսեն, –** 1881, Հայրենիքի պահանջները և հայ գյուղացին/հրապարակախօսութիւն կատարված 1881 թ. մայիսի 24-ին կրկնված յունիսի 12-ին Արծրունու թատրոնում/, Թիֆլիս, 1881:
**Թովմա Արծրունի և Անանուն**, – 1985, Պատմություն Արծրունյաց տան /բնագիրը

հրատարակության պատրաստեց, աշխարհաբար թարգմ, և ծանոթագր. Վ. Մ. Վարդանյան/, Եր., 1985:
**Լոռնեան Գ.,** – 1909, Ոճը և գույները հայ գործուածքի մեջ.- Տնայնագործական համագումար, Թիֆլիս, 1909:
Հ. Շարամբեյան կենտրոն, Հայաստանի ժողովրդական արվեստի թանգարան, գ/հ 10548:
Հայաստանի ազգագրության պետական թանգարան, գորգի ֆոնդ, գ/հ 6938/19:
Հայաստանի ազգագրության պետական թանգարան, գործվածքի ֆոնդ, գ/հ 3665:
**Հակոբյան Թ.**, – 1984, Հայաստանի պատմական աշխարհագրություն, Եր., 1984:
**Հակոբյան Հր.,** – 1975, Վասպուրականի մանրանկարչությունը, գիրք 1, Եր., 1975:
**Հակոբյան Հր.,** – 1982, Վասպուրականի մանրանկարչությունը, գիրք 2, Եր., 1982:
**Հաղբատի ավետարանը,** – 2012, հեղինակ կազմող՝ **Կարեն Մաթևոսյան**, մասնակից հեղինակ՝ Գայանե Էլիազյան, Եր., 2012:
**Յակուտ ալ-Համավի,** – 1965, Աշխարհագրական բառգիրք.- Արաբական աղբյուրները Հայաստանի և հարևան երկրների մասին, կազմեց Հ. Թ. Նալբանդյան, Եր.,1965:
**Մ.Ա.,** – 1890, Թուրքիայի հայերը և նրանց դրացիները, Մարսելլ, 1890:
**Մանուկյան Արամ,** – 1990, Յուշեր, Եր., 1990:
Մայր Աթոռ Սուրբ Էջմիածնի «**Գանձատուն**» թանգարան, գորգի ֆոնդ, **№ 60**:
**Միրախորյան Մ.**, – 1885, Նկարագրական ուղևորություն ի հայաբնակ գավառս Արևելյան Տաճկաստանի, մասն Բ, Կ.Պոլիս, 1885:
**Շերմազանյան Գալուստ**, – 1890, Նիւթեր ազգային պատմութեան համար, երևելի հայկազունք ի Պարսկաստան աշխատասիրութեամբ Գալուստ Շերմազանեանի, Ռոստով, 1890:
**Պողոսյան Ա.**, – 1984, Դաշտային ազգագրական նյութեր, Տետր 1, գիտարշավ Վայք, 1984:
**Պողոսյան Ա.**, – 2008, «Պազիրիկ» գորգի ծագումնաբանության մասին.- **«Էջմիածին»,** նոյեմբեր-դեկտեմբեր, 2008, ԺԲ:
**Պողոսյան Ա.,** – 2012, Դերսիմի հայոց գորգագործական մշակույթի մասին /պատմազգագրական ակնարկ/.- «Էջմիածին», 2012, Ա:
**Պողոսյան Ա.**, – 2013, «Պազիրիկ» գորգի ծագումնաբանության մասին.- **«Էջմիածին»,** նոյեմբեր-դեկտեմբեր, 2008, ԺԲ:
**Պողոսյան Ա.**, – 2013, «Պազիրիկ» գորգի ծագումնաբանության մասին /հայերեն և ագլերեն լեզուներով/, Եր., 2013:
**Պողոսյան Հ. Մ.**, – 1998, Վասպուրականի պատմությունից (1850-1900), Եր., 1988:
**Տնայնագործական համագումար,** – 1909, Թիֆլիս, 1909:
**Րաֆֆի**, Ուղեգրություններ, Ճանապարհորդություն Պարսկաստանի.- Երկերի ժողովածու, հ. 9:
**Փափազյան Հ.,** – 1953, Անանուն տաջիկ աշխարհագիրը Հաաաստանի, Ադրբեջանի և արևելյան Վրաստանի աշխարհագրության և տնտեսական հարաբերությունների մասին/10-րդ դ./.- ՀՍՍՀ ԳԱ Տեղեկագիր, Եր., 1953, էջ 78-79:
**Измайлова Т. А.**, – 1979, Армянсакая миниатюра XI века, М., 1979, պատկեր 136:

**Йан Беннет, Малькольм Хазлан,** Ковры и коврики.-Антиквариат, энциклопедия мирового искусства, изд. Белый город, Москва, 2003 , стр. 158-159:
**Мкртчян Ш., –** 1989, Историко-архитектурные памятники Нагорного Карабаха /второе издание/, Ер., 1989.
**Пиралов А. С.**, – 1913, Краткий очерк кустарных промысел Кавказа, издание второе, С. Петербург, 1913.
**Шараф хан Бидлиси**, – 1967, Шараф наме, М., 1967:
**Aschenbrenner Eric**, – 1995, Iranian Town and Village Carpets and Rugs,Tehran, 1995, էջ 8,12,14,40,48.59,74:
**Gregorian T. Arthur, Gregorian Joyce Hampshire**, – 1987, Armenian Rugs from Gregorian Collection, Copyright, 1987.
**Javad Nassiri M.**, – 2002, The Persian Carpet, Roma, 2002.
**Javad Nassiri M.**, – 2002, The Persian Carpet, Napoli, 2002.

**АШХУНДЖ ПОГОСЯН**
*Кандидат исторических наук*
*Центр экспертизы культурных ценностей*
*ashxung@rambler.ru*

# О КОВРОТКАЦКОЙ КУЛЬТУРЕ ЮГО-ВОСТОЧНЫХ ПРОВИНЦИЙ ВАСПУРАКАНА

## РЕЗЮМЕ

Васпуракан был одной из крупнейших областей исторической Армении и занимал на северо-востоке территорию от восточного побережья озера Ван до Нахиджевана, Гохтана и Аракспара/Карадаг/, а на востоке и юго-востоке до озера Урмия и бассейна верхнего течения, восточного Тигра. Васпуракан составлял центральную часть одного из (раннеармянских) царств Урарту со столицей Тушпа /город Ван/.

Различные сведения, в частности, ассирийские, указывают, что в этом регионе наряду с другими видами промыслов традиционно было развито и ковроткачество. Мы считаем, что при изучении истории ковроткачества Васпуракана ключевое значение имеет ковер «Пазирик», который по нашему мнению создан именно в этом регионе. О развитой традиции ковроткачества Васпуракана сообщают средневековые письменные источники. Например, анонимный автор X века в своем труде «Худуд аль-Алам» сообщает, что города Хой, Беркри, Ахлат были известными центрами ворсового и безворсового ковроткачества. Арабский географ Якут аль-Амави (1178-1229 гг.) повествует о том, что в Ване ткали большие ковры. Некоторые представления о художественных особенностях позднесредневековых традиций васпураканских ковров можно найти в миниатюрах XIII-XVI веков, созданных в скрипториях Васпуракана /Востане, Албаке, Хизане, Хлате, Арчеше, Арцке, Ахтамаре и других/. В частности, в миниатюрах художников Закарии, Рстакеса, Церуна, Киракоса, Ованнеса изображены фрагменты ковров, представляющих некоторые орнаментально-композиционные и цветовые особенности ковров того периода. Однако, более многочисленные письменные источники относятся к XIX веку и началу XX в. В трудах Г. Инчичяна, М.Мирахоряна, С.Эприкяна, А. Тохмахяна и других, нашли место сведения об экономической деятельности населения Васпуракана, и в этом аспекте ковроткачеству и его особенностям уделяется особое внимание.

Юго-восточная часть Васпуракана - исторический Албак с первых веков нашей эры до середины XI века был доменом Арцрунидов - одного из

влиятельнейших княжеских домов исторической Армении. После нашествия сельджуков и других восточных кочевых племен, в течение нескольких веков в регионе, и вообще в исторической Армении изменился демографический спектр, изменяются также многие исконно армянские топонимы, в частности юго-восточную часть Васпуракана стали называть Хакяри. Со второй половины XIX века Васпуракан был разделен на две части, после чего Албак и соседние провинции были включены в состав санджака Хакяри. Эти территории наряду с армянами, населяли также курдские племена, турки, айсоры и другие народности. После геноцида армян, там остались только курды и турки.

В последние десятилетия резко возрос интерес к курдским коврам. При этом, авторы ряда исследований связывают возникновение и развитие ковроткачества в исторической Армении и в том числе в интересующем нас регионе с курдскими племенами. Один из них, Майкл Вендорф даже уверен, что остатки ворсовых изделий из Чатал Оюка ткали предки курдских племен и таким образом, история курдского ковроткачества охватывает свыше восьми тысяч лет.

Однако, даже беглый обзор этих исследований заставляет предположить, что их авторы либо пребывают в неведении, либо умышленно игнорируют, значение армянского фактора в области происхождения и дальнейшего развития ковроткачества в Передней Азии, и тем более на Армянском нагорье и в Малой Азии. Необоснованность вышеуказанных суждений замечают и другие исследователи, как например Ян Беннет, Мурей Эйланд, Филберто Бонкомпагни, Стивен Прайз, Браян Морехауз и другие. В частности, в рецензии на труд Вильяма Иглетона “ О курдских коврах и других тканях” Мурей Эйланд заметил, что “все представленные в книге ковры сотканы до 1915 года, когда там /в Малой Азии и исторической Армении-**А.П.**/, жили крупные этнические группы - турки, курды, армяне и курды были тогда немногочисленны”.

Нам кажется, что при изучении ковроткачества в упомянутых регионах игнорирование армянского фактора связано с тем, что там после геноцида не осталось армян. Эти территории теперь заселены в основном курдскими племенами, у которых находятся изучаемые ковры этих исследователей. Но дело в том, что основная часть этих ковров являются армянскими, которые в ходе периодических грабежей и особенно во время геноцида оказались в руках турок и курдов. Типичным примером этого процесса могут послужить наблюдения американских миссионеров евангелистов, которые в 1910-ых годах развернули свою деятельность в бассейне озера Урмиа и в близлежащих провинциях и были очевидцами этих событии. В частности, они сообщают, что “ курдские и регулярные боевые отряды в Урмии, Албаке и в других близлежащих провинциях у христианского населения захватили всякое имущество, в том числе продукты питания, ковры, одежду, золотые украшения. Они это сделали везде, а тех, которые оказывали сопротивление, убивали”. Кроме армян, в этих краях христианами были и айсоры, но у последних отсутствовали традиции ковроткачества.

При этом, у нас нет сомнения, что в процесс формирования и дальнейшего развития переднеазиатского ковроткачества внесли свою лепту и курдские племена, однако в этом аспекте в интересующих нас регионах недопустимо игнорировать решающую роль армянского народа. Учитывая вышесказанное, мы представили в данной статье обзор исторической демографии Васпуракана, роль и состояние ковроткачества в быту армян юго-восточных провинции этого региона, по имеющимся возможностям выявлены характерные типы ковров и их художественные и технологические особенности.

Обобщая, мы пришли к заключению, что традиции армянского ковроткачества сохранялись старинные в юго-восточных провинциях исторического Васпуракана вплоть до 1918 года. Наряду с этим, в процессе тысячелетиями продолжающихся геополитических событии армянские ковроткацкие традиции так или иначе обогащались новыми чертами,а с другой стороны, как указывают наши исследования, традиции армянского ковроткачества оказали существенное влияние на ковроткацкие традиции курдских племен. Таким образом, думаем, что дальнейшие объективные исследования дадут нам возможность представить весь облик и ход исторического развития ковроткачества в провинциях восточного и юго-восточного Васпуракана, а также выявить истинную роль и значение ковроткачества курдских племен.

**ASHKHUNJ POGHOSYAN**
*PH.D. in History*
*Cultural Values Expertise Center*
*ashxung@rambler.ru*

# ON THE ARMENIAN RUG-WEAVING CULTURE OF SOUTH-EASTERN PROVINCES OF VASPOURAKAN

## SUMMARY

Vaspourakan was one of the provinces of Mets Hayk (Greater Armenia) and covered the eastern and south-eastern territories of Lake Van to the Gokhtan province and Araqspar/Karadagh/, the territories on the shores of Lake Urmia and upper reaches of the Eastern Tigris. This province was the central part of Van Kingdom - one of the early kingdoms of Armenia. The city of Van, the former Toushpa, was its capital. The main source in the research of Vaspourakan rug-weaving culture is the rug of «Pazyryk».

Evidence from excavations and medieval written sources show that rug-weaving was highly developed in Vaspourakan. E.g., Jakut-al-Hamavi mentions that in X-XI centuries large rugs were woven in the city of Van. AX - century a Tajik traveler mentions in his «Hudud-al-Alam» /The Borders of the Earth/ that Khoy, Berkri, Akhlat, Archesh were known as carpet-weaving centers. The rug illustrations and details of decorations by the XIII-XVI century miniaturists KirakosAghbaketsi, Rstaketsi, Tserun Tsaxkogh, bear witness that rug-weaving was highly developed and had its original features in Vaspourakan. The rug-weaving culture continued as one of the main crafts into the later centuries, as witnessed byGhoukasInchichean, M. Mirakhoryan, H.S. Ephrikyan, ArsenTokhmakhyanet al. in the late 19 to early 20$^{th}$centuries.

The areas of Vaspourakan forming the province of Hakyar, were mainly populated by the Kurdish tribes after the genocide (1915-1918). In the last decades, in the sphere of Oriental rug research this region is of great interest. Some experts connect the origin of rug-weaving and its development with Kurds. Michael Wendorf, for example, believes that the remains of textiles found byÇatalHöyük, were woven by the Kurds and according to him the Kurdish rug-weaving had more than eight thousand years of history. Our observations allow us to conclude that the above-said sources and historical demographic data aren’t known or are ignored by the authors of the publication. Incidentally, this disparity has also been observed by

researchers like Yan Bennet, Murray Eiland, FilibertoBoncompagni, Steve Price, Jim Allen, Brian Morehouse et al.

**Murray Eiland**, in the review on the widely known «About Kurdish Rugs and other Textiles» by **William Eagleton** published in 1988, noted that in the above-mentioned work « **…all the represented rugs were woven at the times before 1915 when large ethnic groups were present in the area. The Turks, Kurds and the Armenians did not constitute large numbers».**

To my mind, the main argument of ignoring the Armenian rug-weaving culture and overrating the Kurdish one is because nowadays the mentioned territories are populated by the Turks or the Kurds owning large quantities of the rug-weaving products. However they have come into possession of those goods as a result of robbery and plunder. In this respect typical examples are publications of an American Christian preacher in 1910s: **«Kurdish irregular forces have robbed everything from the Christians of Lake Urmia and the surrounding villages - food, rugs, clothes and jewelry. They have taken from everywhere they met, and those, who had resisted the robbery, were killed or wounded».**

Anyway, there is no doubt, that in the system of the Near Eastern rug-weaving culture Kurdish tribes have also had their contribution. But anyhow, why do only the Kurds should be mentioned with regard to those areas? Taking into account all those facts, we have produced a description of the Armenian rug-weaving culture of this and adjacent regions identifying the distinctive types of rugs, their esthetic and technological characteristics.

Summing up, we can conclude that the ancient traditions of Armenian rug-weaving culture have been preserved in the south-eastern and eastern regions of Vaspourakanin Historical Armenia. Those traditions, having undergone the influence of geopolitical processes, expanded, survived for centuries in Historical Armenia and, in their turn, had a great impact on the rug-weaving processes of the Kurdish tribes.

Respectively, a further exploration of those traditions will enable a more complete idea about the Armenian rug-weaving culture making more manifest the true role and significance of Kurdish rug-weaving culture in this region.

ԴԻԱՆՆԱ ՄԻՐԻՋԱՆՅԱՆ
*ՀՀ ԳԱԱ Հնագիտության և ազգագրության ինստիտուտ*
*dianamirijanyan@gmail.com*

ՏԻԳՐԱՆ ԱԼԵՔՍԱՆՅԱՆ
*Պատմամշակութային ժառանգության գ/հ կենտրոն*
*tigranalexanyan@yandex.ru*

# ՀՆԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ ԱՐՈՒՃ ՀՆԱՎԱՅՐՈՒՄ

2013 թ. հայ-իտալական հնագիտական համատեղ աշխատանքներն Արուճում կենտրոնացվեցին Կաթողիկե եկեղեցու և պալատի միջակա տարածքում, որտեղ առաջին անգամ հստակեցվեցին հնագիտական շերտերը և ժամանակագրությունը: Պեղումների արդյունքում պալատի հյուսիսային պատի տակ, նրա երկայնքով, բացվեցին շրջանաձև, ոչ խորը թոնիրներ: Պեղումներով պարզ դարձավ, որ դրանք ներկառուցված են այս հատվածում առկա հիմնաժայռի մեջ: Դրանց մեջ կան ինչպես մեծ՝ մինչև 1մ տրամագծով, այնպես էլ ավելի փոքր չափերի թոնիրներ: Որոշների մեջ առկա էր հաստ մոխրաշերտ, այրված ոսկորների մնացորդներ:

Տաճարի հիմքերի ամրության, դրանց պահպանվածության վիճակը ստուգելու նպատակով որոշվեց փորել երկու խուզահորեր՝ մեկը տաճարի հարավային կողմում՝ դռնից արևելք, մյուսը՝ տաճարի ներսում, արևմըտյան մասում, մուտքից աջ: Փորված խուզահորից գտնվեցին հիմնականում կղմինդրի բեկորներ:

Պեղումներով հայտնաբերվել են խեցեղեն գտածոներ, ապակե իրեր, մետաղե առարկաներ և դրամներ, որոնց ուսումնասիրությունը մատենագիտական աղբյուրների համադրմամբ կարևոր տեղեկություններ է հաղորդում տարբեր դարերում բնակավայրի խաղացած դերի մասին:

**Ուսումնասիրության պատմություն:** Արուճի Ս. Գրիգոր կաթողիկե եկեղեցու և նրան հարող հուշարձանախմբի գիտական ուսումնասիրությունները սկսվել են նախորդ դարի կեսերից: Հուշարձանի վերականգնման աշխատանքներով պայմանավորված՝1947 թ. «Պատմական հուշարձանների պահպանության կոմիտե»-ի կողմից (ղեկ. Վարազդատ Հարությունյան) Արուճի հնավայրում ձեռնարկվել են պեղման և մաքրման առաջին աշխատանքները, որոնք շարունակվել են մինչև 1970-ական թթ.: Պեղումների արդյունքում բացվել է Գրիգոր Մամիկոնյանի կառուցած պալատը, որի կարևորությունը միջնադարյան հայ ճարտարապետության պատմության

համար ուսումնասիրողները նշել էին մինչ պեղումները[1]: Վաստակաշատ գիտնականը կատարելով Արուճի պալատի ճարտարապետական և ծավալատարածական հորինվածքի առաջին մանրամասն ուսումնասիրությունը՝ այն համեմատել է Հայաստանի աշխարհիկ այլ կառույցների, մասնավորապես Դվինի VII դ. կաթողիկոսական պալատի հետ: Նմանությունները հատկապես պատկերավոր են Վ. Հարությունյանի կազմած համեմատական աղյուսակում[2]: Պեղումների ընթացքում բացվել է նաև Արուճի տաճարից հարավ-արևելք գտնվող բազիլիկ եկեղեցին[3]:

Միջնադարյան հնավայրի հետագա ուսումնասիրությունները կատարվել են 1980-1981 թթ.՝ ԵՊՀ Հայագիտական կենտրոնի հնագիտական արշավախմբի կողմից՝ ղեկավար Բ. Սաղոյան[4]: Իրականացրած պեղումների արդյունքում բացվել է Արուճի հուշարձանախմբից մոտ 2 կմ հարավ-արևմուտք գտնվող ուղղանկյուն հատակագծով վաղ միջնադարյան ամրոցի պարսպի մի հատվածը:

Հուշարձանախմբի տարածքի բարեկարգմամբ պայմանավորված՝ 2006 թ. որոշակի մաքրման աշխատանքներ են կատարվել նաև բազիլիկ եկեղեցու շրջակայքում, որի արդյունքում հստակեցվել է կառույցի հոգևոր նշանակությունը[5]:

«Օժանդակություն տեղական հաստատություններին մշակութային ժառանգության պահպանման և վերականգնման ոլորտում» իտալական կրթական ծրագրի շրջանակներում ՀՀ մշակույթի նախարարության որոշմամբ 2012-2013 թթ. Արուճ հնավայրում կազմակերպվել է շինհրապարակ-դպրոց: Հայ-իտալական համատեղ աշխատանքները տաճարի ճարտարապետական ուսումնասիրություններից զատ նախատեսում էին նաև հնագիտական հետազոտություններ Ս.Գրիգոր եկեղեցու շրջակայքում: Չնայած, որ պեղումներն իրականացվել են ուսուցողական նպատակներով և շատ փոքր մակերեսի վրա, այնուամենայնիվ ունեցել են կարևոր նշանակություն: Օրինակ, 2012թ. աշխատանքների շնորհիվ տաճարի արևելյան մասում բացահայտվեցին անհայտ կառույցի հիմքեր, որը դեռ ուսումնասիրության կարիք ունի:

**2013 թ. պեղումները:** 2013 թ. հայ-իտալական հնագիտական համատեղ աշխատանքներն Արուճում տեղի են ունեցել հունիս-հուլիս ամիսներին (գիտական մասով կոորդինատոր՝ պրոֆ. Հայկ Ավետիսյան, հնագետներ՝ Մատիլդե Մարզուլլո, Դիաննա Միրիջանյան, Տիգրան Ալեքսանյան): Դրանք կենտրոնացված էին Կաթողիկե եկեղեցու և պալատի միջակա տարածքում (գծագիր 1): Այս հատվածում սփռված էին տարբեր խաչքարերի

[1] **Марр**, 1934, 46.
[2] **Հարությունյան**, 1953, 61:
[3] **Մաթևոսյան**, 2010, 197-212:
[4] **Սաղոյան**, 1985, 162-173:
[5] **Սարգսյան**, 2007, 34-37:

թերի և ամբողջական օրինակներ, տարբեր շինությունների քարեր, ժամանակագրորեն ուշ շրջանի գերեզմաններ:




**Գծանկար I**: 2013 թ. պեղումների համար առանձնացված հատվածը:

Իշխանական պալատի հյուսիսային պատից 140սմ հեռավորության վրա, պալատի պատին զուգահեռ, արևելք-արևմուտք ձգվում էր մի պատ՝ պահպանված մասի բարձր. 60սմ, լայն.՝ 120 սմ: Ժամանակագրորեն այն ավելի ուշ շրջանում, երկրորդ օգտագործմամբ կարմիր տուֆով, հողի շաղախով կառուցված պատ է: Պեղումների արդյունքում պատի մեջ բացվեց թաղում՝ մարդկային կմախքի վատ պահպանված մնացորդներով, որի պեղումներից գտնվեցին բրոնզե իրեր: Կմախքի մատի ոսկորներից մեկի վրայից գտնվել է 2.5 սմ տրամագծով բրոնզե մատանի և մետաղադրամի երկու բեկոր: Նշված պատի դերի ու ֆունկցիոնալ նշանակության, տաճարի և իշխանական պալատի հետ ունեցած կապի մասին ամբողջական պատկերացում կազմելն առայժմ դժվար է: Պարզ է սակայն, որ տաճարի հարավային պատի տակ արված թաղումների ժամանակ նշված պատը վաղուց կորցրել էր իր նշանակությունը, միաձուլվել տարածքի հողաշերտին, որի մեջ և արվել էր վերոնշված թաղումը (նկ.1,2):



**Նկ.1** Պատի մեջ արված թաղման տեղը:



**Նկ.2** Պատի մեջ արված թաղումը:

Հետաքրքիր պատկեր բացվեց իշխանական պալատի հյուսիսային ճակատի և պեղվող պատի միջև գտնվող հատվածում: Պալատի հյուսիսային պատի տակ, նրա երկայնքով, բացվեցին շրջանաձև, ոչ խորը թոնիրներ (նկ.3,4): Պեղումներով պարզ դարձավ, որ դրանք ներկառուցված են այս հատվածում առկա հիմնաժայռի մեջ:



**Նկ. 3** Պալատի հյուսիսային պատի տակ բացված թոնիրները:



**Նկ. 4** Պալատի հյուսիսային պատի տակ բացված մեծ թոնիրը:

Դրանց մեջ կան ինչպես մեծ՝ մինչև 1մ տրամագծով, այնպես էլ ավելի փոքր չափերի թոնիրներ: Որոշների մեջ առկա էր հաստ մոխրաշերտ, այրված ոսկորների մնացորդներ:

Այս հատվածի հնագիտական պատկերը կամբողջանա լրացուցիչ պեղումներով, սակայն, ըստ նախնական դիտարկման, այստեղ առկա է հարաբերական ժամանակագրության չորս շրջան՝ արտացոլված հնագիտական, մշակութային շերտերով.

1. իշխանական պալատ,
2. թոնիրներ,
3. հետագայում կառուցված պատ,
4. թաղում պատի մեջ:

Տաճարի հարավային պատի տակ բացված խուզահորը 140x240 սմ չափերի է, 40սմ խորությամբ: Դրա արդյունքում ամբողջությամբ բացվեցին տաճարի հիմնապատվանդանի ստորին քարերը (նկ.5):



**Նկ. 5** Տաճարի հարավային պատի տակ բացված խուզահորը:

Տաճարի հիմքերին հավասար խորությունից բացվեցին գերեզմանի սալաքար, մարդու ոսկորներ, որոնց պեղումներից զերծ մնացինք: Այս շերտում թաղումների առկայությունը միանգամայն տրամաբանական է և սպասելի:

Տաճարի հիմքերը, ինչպես նաև նրա հարավային պատի տակ գոյություն ունեցող շինության մնացորդների նշանակությունը պարզելու նպատակով, վերջինիս արևելյան պատի տակ բացված խուզահորանն ավելի խորացրեցինք՝ խորությունը հասցնելով 120սմ: Պարզ դարձավ, որ կառույցի պահպանված հիմքերի վերին՝ վերականգնված, մեկ շարքից բաղկացած պատն ունի ստորին շարքեր, որոնք հենվում են տաճարի պատին: Պարզ դարձավ նաև, որ եկեղեցու հիմքերը բարձրանում են կրաշաղախի մեջ մանրացված տուֆով արված շերտի վրա (նկ.6):



**Նկ. 6** Սբ. Գրիգոր եկեղեցու հիմքերը:

Փորված խուզահորից գտնվեցին հիմնականում կղմինդրի բեկորներ: Հետաքրքիր է նշել նաև, որ խուզահորանի՝ 120սմ խորությունից ևս բացվում էին մարդկային ոսկորների մնացորդներ, որոնց առկայության և ժամանակի սղության պատճառով այս հատվածում պեղումները դադարեցվեցին: Հնարավոր է, որ դրանք պատկանում են տաճարի կառուցմանը նախորդած ժամանակաշրջանին, ինչը հնարավոր կլինի պարզել միայն հետագա ուսումնասիրություններով:

**Գտածոներ**

Պեղումներով հայտնաբերված ամբողջ հնագիտական նյութը բաժանվում է երեք խոշոր խմբերի՝ խեցեղեն գտածոներ, ապակե իրեր, մետաղե առարկաներ և դրամներ:

**Խեցեղեն:** Պեղումների արդյունքում հայտնաբերված նյութերի մեջ ստվար խումբ է կազմում խեցեղենը, որն աչքի է ընկնում կիրառման, պատրաստման հնարների, որակական ու գեղարվեստական ձևավորման բազմազանությամբ: Ըստ կիրառական նշանակության, այն բաժանվում է երկու մեծ խմբի՝ տնտեսական-կենցաղային և շինարարական: Իր հերթին

կենցաղային խեցեղենի մեջ առանձնանում է երկու մեծ խումբ՝ հասարակ և ջնարակապատ անոթներ: Ըստ ժամանակագրության հայտնաբերված ամբողջ խեցեղենը բաժանվում է հետևյալ դարաշրջանների. ա. IV-V դարեր, բ. VII դար, գ. IX- X դարեր, դ. XII- XIII դարեր:

**Ա. IV-V դարերի խեցեղեն:** Անտիկ ժամանակաշրջանից վաղ միջնադարին անցման փուլի խեցեղենը հիմնականում ավազախառն, մուգ մոխրագույն խեցատով է, ունի սև կամ կարմրա-դեղնավուն երանգավորում և կրում է սանրազարդեր[6]: Թրծումը կատարվել է 700-750 աստիճանում (խեցեղենի մակրոսկոպիկ անալիզը կատարել է Ի. Հովսեփյանը, ՀԱԻ): Արուճի պեղումներով հայտնաբերված վաղմիջնադարյան խեցեղենի մեջ առկա է երկու գտածո, որոնց մակերեսը ևս հարդարված է մանր գծազարդերով (աղ.1, նկ.1): Այս շրջանում, ուշ անտիկին բնորոշ կարմրափայլ և գունազարդ խեցեղենը բացակայում է: Անցումային փուլի խեցեղենի առավել ամբողջական պատկերը տեսանելի է հատկապես Զաքարի բերդ ամրոց-բնակավայրում[7]:

**Բ. VII դարի խեցեղեն:** Հիմնականում ներկայացված է շինարարական խեցեղենի՝ կղմինդրի օրինակներով: V-VII դդ. եկեղեցիների և մատուռների կառուցման ու վերանորոգման աշխատանքների լայն ծավալները զարկ տվեցին կղմինդրի արտադրությանը, որը վաղ միջնադարյան խեցեգործական արտադրանքում առանձնահատուկ տեղ ունի: Արուճի պեղումներով հայտնաբերված տափակ կղմինդրների օրինակները բազմաթիվ են, որոշները պահպանված են գրեթե ամբողջությամբ (աղ.1, նկ.2):

Ծածկերի եզրերը պսակող կղմինդրները պատրաստվում էին եռանկյունաձև ճակտոնով, որը զարդարում էին թաց կավին մատների կամ բութ գործիքի օգնությամբ արված տարբեր զարդամոտիվներով: Արուճի ճակտոնները հարդարված են մատներով արված ակոսներով, որոնք արմավազարդի տպավորություն են թողնում (աղ.1, նկ.3): Ճակտոնների առկայությունը ծածկերի վրա առանձին շքեղություն էր տալիս շենքի հարդարանքին: Վաղ միջնադարում կղմինդրի արտադրությունը կենտրոնացած էր մեծ բնակավայրերում գործող արհեստանոցներում: Հայաստանում կղմինդր արտադրվել է Դվինում, Աղցքում, Վաղարշապատում, ինչի մասին վկայում են հայտնաբերված խոտանները, առանձին գրերն ու պատկերները: Արուճում կղմինդրի տեղական արտադրության վերաբերյալ փաստեր առայժմ չկան: Շատ դեպքերում կղմինդրները պատել են կավալուծույթով, ինչպես Արուճի օրինակները, կամ ներկել են կարմիր կամ շագանակագույն ներկերով: Ներկելու նպատակը դրանք տեղումներից պաշտպանելն էր, իսկ գույնի ընտրությունն ունեցել է զուտ գեղագիտական նշանակություն: Հայաստանում քրիստոնեական կառույցները պահպանեցին քրիստոնյա ողջ աշ-

[6] Տիրացյան, 1968, 287; **Խաչատրյան Հ.,** 1996, 31-32; **Тер-Мартиросов,** 1996, 74-75; **Тер-Мартиросов, Караханян,** 1998, 26; **Канецян, Зинджирджян,** 2008, 190-191:

[7] **Асатрян,** 2005:

խարիին բնորոշ կղմինդրածածկ տանիքը մինչև IX դ., որից հետո այն փոխարինվեց ավելի դիմացկուն քարե սալերով:

**Գ. IX-X դարերի խեցեղեն:** Այս շրջանի խեցեղենը ներկայացված է հիմնականում ջնարակապատ անոթների օրինակներով, որոնք թեև բեկորային են, սակայն լիովին կրկնում են համաժամանակյա այլ հուշարձաններից հայտնի տեսակները:

Խեցեղենի նկարազարդումը կատարված է բացառապես կանաչի, դեղինի և շագանակագույնի համադրմամբ (աղ.1, նկ.5): Նկարազարդումը կատարված է միայն բուսական և երկրաչափական հարդատարրերով, որը IX դարի ջնարակած խեցեղենի առանձնահատկություններից է: Մարդկային և կենդանական պատկերագրությամբ ջնարակած խեցեղենը հանդես է գալիս համեմատաբար ուշ՝ փաստելով գեղարվեստական խեցեղենի վերընթաց զարգացումը:

**Դ. XII-XIII դարերի խեցեղեն:** Արուճի պեղումներով հայտնաբերված խեցեղենի մեջ ամենամասսայականն է: Հասարակ խեցեղենի մեջ հետաքրքիր են կարմրափայլ կարասի բեկորները: Կարմրափայլ, դրոշմազարդ կարասները շուրջ 1մ բարձրությամբ, կարճ վզով, գնդաձև իրանով, երկուսից չորս պարուրաձև հավելումներ ունեցող կանթերով անոթներ են, որոնցով խնջույքների ժամանակ գինի է մատուցվել: Գեղարվեստական ուշագրավ պատկերներով հարուստ դրոշմազարդը, որն արված է պտտվող գլանաձև դրոշմիչի օգնությամբ, գոտևորում է կարասի իրանի ամենալայն հատվածը: Արուճի կարմրափայլ կարասից առկա են իրանի և կանթի բեկորները: Պահպանված չէ դրոշմազարդ գոտու հատվածը: Երևում է միայն եռանկյունաձև արված զարդարուն մասը, որը լցված է փոսիկներով: Եռանկյունու մի հատվածում կապույտ ապակիով արված է ինկրուստացիա (աղ.1, նկ.4): Մեկ այլ բեկորից պահպանված է դրոշմազարդ հատվածը, որը հարդարված է շրջանների և դրանցից դուրս եկող գծազարդերով (աղ.1, նկ.6):

Արուճի պեղումներով հայտնաբերված XII-XIII դդ. խեցեղենի հավաքածուի մեջ մեծամասնություն են կազմում կճուճները: Դրանք հիմնականում միանման են, տարբերվում են չափերով և հարդարման զանազան միջոցներով: Դրանց թե արտաքին, թե ներքին մակերևույթը բաց դարչնագույն կամ աղյուսագույն է, երբեմն ամբողջությամբ մրապատ կամ մրի հետքերով (աղ.1, նկ.7,8): Կճուճները հիմնականում երկկանթ են, պատահում են նաև միականթ և անկանթ օրինակներ: Անոթներն ունեն հաստ, սկավառակաձև նստուկ, գնդաձև իրան, կարճ և լայն վիզ, կլոր, ուղիղ կամ քիչ դուրս շեշտված պսակներ, որոնք հարդարվում էին ակոսազարդերով և ալիքներով:

Սկսած 11-13-րդ դդ. կճուճների կանթերը դառնում են ժապավենաձև՝ վերադիր, պայտաձև ելուստով: Ժապավենաձև կանթերը գոյատևում են հետագա դարերում ևս՝ կտրվածքում կլոր կանթերի հետ զուգահեռաբար:

Արուճի պեղումները տվել են նաև խփերի բեկորային օրինակներ: Դրանք սկավառակաձև են՝ թեք կտրված եզրերով, բարձր, կոնաձև (մանչ) և փոսիկավոր (աղջիկ) բռնակներով (աղ.1, նկ.9):

Արուճի խեցեղեն հավաքածուի մեջ քիչ չեն նաև կարմրափայլ-կարմրաներկ թասերը: Անոթների հարդարման այս նոր մոտեցումն ի հայտ եկավ 12-13-րդ դդ.[8]: Զարդարվում էին հիմնականում փորագիր գծազարդերով: Այս նրբակերտ թասիկներին զուգահեռ լայնորեն գործածվում էին փոքր-ինչ կոպիտ արված քրեղանները, որոնց շուրթերի պսակները բավականին լայն էին և երբեմն զարդարվում էին փորագիր ալիքազարդով: Արուճի գտածոների թվում առանձնանում է կարմիր ցայտքերով և պսակի հատվածում կարմիր գծաներկերով թասի բեկորը: Այս խմբում ուշադրության է արժանի նաև կարմրափայլ թասի հատակամասը, որն ունի վարպետի փորագիր նշան (աղ.1, նկ.10):

Հասարակ խեցեղենի տեսականու մեջ առանձին խումբ են կազմում լուսավորության միջոցները: Հայաստանի հնավայրերից հայտնի են ճրագների տարբեր տեսակներ՝ թասանման, նավակաձև, թեյնիկանման, տերևաձև[9]: Արուճի պեղումներով հայտնի ճրագները նավակաձև են: Դրանք պատրաստված են դուրգի վրա, ունեն հարթ, թեթևակի շեշտված շրջանաձև հատակ: Քթիկի մասում սեղմումով ընդգծված է պատրույգի տեղը, որի այրումից ճրագները քթիկի հատվածում մրոտված են: Գտնված ճրագների մեջ առկա են նաև ջնարակապատ օրինակների հատվածներ (աղ.1, նկ.11-Գ):

Հայտնաբերված նյութերի թվում առավել ուշագրավ գտածոն կավե փոքրիկ, ձեռածեփ հալոցն է՝ գտնված կաթողիկոսական պալատի հյուսիսային պատին կից բացված թոնրից (աղ. 2, նկ.1): Անոթի շուրթի մի հատվածն ավելի բարձր է արված՝ հեղուկն ավելի հեշտ լցնելու նպատակով (բարձ. 3,5-4սմ, տգ. 5,5սմ): Հատակն անհարթ է: Նմանօրինակ հալոց հայտնի է նաև Հայաստանի վաղմիջնադարյան մայրաքաղաք Դվինի պեղումներից[10]:

Պեղումների արդյունքում հայտնաբերված նյութերի մեջ առկա են նաև ջնարակապատ խեցեղենի սակավ օրինակներ, որոնց մեջ կան միագույն ջնարակով պատած, փորագրումով կամ անգոբի հեռացումով զարդանախշված օրինակներ: Դրանց համար հիմնականում օգտագործվել է կանաչ և դեղին ջնարակները (աղ. 1, նկ. 11 Ա-Բ): Փորագրումով կամ անգոբի հեռացումով թասի կենտրոնում սովորաբար տեղադրվում է ոչ բարդ ծաղիկ-վարդյակը:

**Ապակե իրեր:** Գտածոների թվում կա նաև ապակու փոքր հավաքածու, որը ներկայացված է ընպանակների իրանի և շուրթի բեկորներով: Ապակե

[8] **Ղաֆադարյան,** Քալանթարյան, 2002, 82:

[9] **Kalantaryan A.** et al, 2009, 133:

[10] **Ղաֆադարյան,** 1952, նկ. 150:

իրերից է նաև ապարանջանի բեկորը, որը սակայն առանձնահատկությամբ աչքի չի ընկնում և կրկնում է Հայաստանի միջնադարյան այլ հնավայրերից հայտնի ձևը: Այն հարթ մակերեսով, կտրվածքում կլոր ապարանջան է, ստացված ապակե մածուցիկ զանգվածից թելեր ձգելու միջոցով՝ առանց լրացուցիչ մշակման (աղ.2, նկ.2): Դատելով այլ հնավայրերից հայտնի բեկորներից, ապարանջանի ծայրերն իրար են միացվել սեղմելու միջոցով: Արուճից գտնված ապարանջանը սև գույնի է, որը առավելհաճախակի հանդիպող գույնն է այլ հնավայրերում ևս[11]:

Պեղումներից գտնված ապակե հավաքածուն սահմանափակվում է կապույն ուլունքահատիկով, որը մեջտեղից կոտրված է (աղ.2, նկ.3):

**Մետաղե գտածոներ:** Դրանց թիվը թեև մեծ չէ, բայց շատ ուշագրավ են: Գտածոների թվում է բրոնզե ձողանման իրը (երկ.10սմ), որը կենտրոնում ունի չորս, ուռուցիկ գոտիներ (աղ.2, նկ.4): Դժվար է հստակ նշել տվյալ առարկայի գործառույթը: Ենթադրելի է, որ մետաղե ձողը ծառայել է որպես հագուստի զարդարանք, գուցե նաև հերակալ:

Պեղումներով հայտնաբերված մետաղե մյուս գտածոն բրոնզե մատանին է (աղ. 2, նկ.5): Ընդհանրապես, Հայաստանի միջնադարյան մատանիները ստորաբաժանվում են երեք, հիմնական խմբերի՝ ա) ակնաքնով, բ) վահանակով, գ) օղակաձև (Հակոբյան, 1981,56): Արուճից հայտնի օրինակը վերաբերում է երրորդ՝ օղակաձև մատանիների խմբին: Դրանք լինում են պղնձից, բրոնզից, երկաթից: Նմանօրինակ մատանիներ հայտնի են տակավին ուշ անտիկ դարաշրջանից, մասնավորապես Վաղարշապատի[12], Արտաշատի[13], Գառնիի[14] պեղումներից և շարունակում են գործածվել նաև հետագայում[15]:

**Դրամներ:** Պեղումների արդյունքում հայտնաբերվել են նաև դրամներ: Դրամներից մեկը Կոնստանտին X կայսեր (1059-1067 թթ.) ֆոլլիսն է (աղ. 2, նկ. 6): Դրամը կրում է սելջուկյան մակադրոշմ «lillah» գրությամբ և թվագրվում է XII դարով:

Հայտնաբերված հաջորդ երկու դրամները սելջուկյան են և թվագրվում են XII դ. վերջով (աղ. 2, նկ. 7,8): Դրանք խիստ մաշված են, պահպանվել են թերի և հնարավոր չէ մանրամասնել դրամների վրա առկա գրությունները[16]:

---

[11] **Ջանփոլադյան**, 1969, 99-100; **Հարությունյան**, 1978, 106; **Պետրոսյան**, 1988, 92:

[12] **Խաչատրյան**, **Թորոսյան**,1976, 100, տախ. III/ 8; **Քալանթար**, 2007, 338, 340:

[13] **Խաչատրյան,** 1981, 82:

[14] **Аракелян**, 1957, 78; **Хачатрян,** 1976, 121-123.

[15] **Հակոբյան**, 1981, 55-62:

[16] Դրամների վերաբերյալ մանրամասն տեղեկությունների համար շնորհակալություն ենք հայտնում ՀՊԹ դրամագիտության բաժնի գիտաշխատողներ՝ պ.գ.թ. Արմինե Զոհրաբյանին և Հասմիկ Հովհաննիսյանին:




**Աղյուսակ I:** Պեղումների արդյունքում հայտնաբերված խեցեղեն գտածոները




**Աղյուսակ II:** 10- թոնրից գտնված հալոց, 11- ապարանջանի բեկոր, 13- ապակե ուլունք, 14- բրոնզե ձող, 15- թաղումից հայտնաբերված բրոնզե մատանի, 16- բյուզանդական ֆոլլիս՝ սելջուկյան մակադրոշմով, 17-18- սելջուկյան դրամներ:

## ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ

**Խաչատրյան Ժ.**, – 1981, Արտաշատ II, Անտիկ դամբարանադաշտեր (1971-1977թթ. պեղումները), Հնագիտական պեղումները Հայաստանում, N 17, ՀՍՍՀ ԳԱ հրատ., Երևան:

**Խաչատրյան Ժ., Թորոսյան Ռ.,** – 1976, Նյութեր Վաղարշապատի հյուսիս-արևելյան դամբարանադաշտից, Լրաբեր հասարակական գիտությունների, 5, 99-111:

**Խաչատրյան Հ.,** – 1996, Նորահայտ հուշարձան Շիրակում, ՀՀ 1993-1995թթ. հնագիտական հետազոտությունների արդյունքներին նվիրված 10-րդ գիտական նստաշրջան, զեկ. թեզ., 31-32:

**Հակոբյան Ն.,** – 1981, Միջնադարյան Հայաստանի գեղարվեստական մետաղը IX-XIIIդդ., Հայաստանի հնագիտական հուշարձանները, 10, ՀՍՍՀ ԳԱ հրատ., Երևան:

**Հարությունյան Ս.** , – 1978, Անբերդ, ՀՍՍՀ ԳԱ հրատ., Երևան:

**Հարությունյան Վ.**, – 1953, VII դարի աշխարհիկ ճարտարապետության մի նոր հուշարձան, ՀՍՍՀ ԳԱ Տեղեկագիր, N8, 53-65:

**Ղաֆադարյան Կ.** , – 1952, Դվին քաղաքը և նրա պեղումները 1, ՀՍՍՌ ԳԱ հրատ., Երևան:

**Ղաֆադարյան Կ., Քալանթարյան Ա.,** – 2002, Դվին 2, Դվին քաղաքը և նրա պեղումները 1973-1980 թթ., Գիտություն հրատ., Երևան:

**Մաթևոսյան Կ.**, – 2010, Արուճի հնագույն բազիլիկ եկեղեցին, Հանդէս Ամսօրեայ, 1-12, 197-212:

**Պետրոսյան Հ.**, – 1988, Գառնին IX-XIV դարերում, ՀՍՍՀ ԳԱ հրատ., Երևան:

**Ջանփոլադյան Հ.**, – 1969, Դվինի ապակե ապարանջանները, Լրաբեր հասարակական գիտությունների, 1, 94-100:

**Սաղոյան Բ.,** – 1985, Արուճի վաղ միջնադարյան հուշարձանները, Պատմա-բանասիրական հանդես, 4, էջ 162-173:

**Սարգսյան Գ.,** – 2007, Արուճի բազիլիկի հնագիտական հետազոտությունը, Հայ արվեստ, 2007, N1, էջ 34-37:

**Տիրացյան Գ.,** – 1968, Հացավան ամրոցի 1963 և 1965 թթ. պեղումների նյութերից, Պատմա-բանասիրական հանդես, 1, 282-291:

**Քալանթար Ա.**, – 2007, Հին Վաղարշապատի պեղումները, Հայաստան. քարե դարից միջնադար, Գիտական ժառանգություն հ. 4, Գիտություն հրատ., Երևան:

**Аракелян Б.,** – 1957, Гарни II, результаты работ гарнийской археологической экспедиции 1951-1955гг., (античный период), АРА, N7, изд. АН АрмССР, Ереван.

**Асатрян Е., –** 2005, Закари берд, результаты раскопок, АРА N 19, изд. Гитутюн, Ереван.

**Канецян А., Зинджирджян В.,** – 2008, Поселения Джрапи, Հուշարձան տարեգիրք, Դ-Ե, 190-191.

**Марр Н.,** – 1934, Ани, книжная история города и раскопки на месте городища, Гос. Социально-экономическое изд., М-Л.

**Хачатрян Ж.,** – 1976, Гарни V, античный некрополь, (результаты раскопок 1956-1972 гг.), АРА, N15, изд. АН АрмССР, Ереван.

**Тер-Мартиросов Ф., Караханян Г.**, – 1998, Раскопки поселения и некрополя античного Ширакавана, Գիտական աշխատություններ, I, 17-30.

**Тер-Мартиросов Ф.**, – 1996, Ширак в эпоху классической античности (VIв. До н.э.-IVв. н.э.), ՀՀ 1993-1995 թթ. հնագիտական հետազոտությունների արդյունքներին նվիրված 10-րդ գիտական նստաշրջան, զեկ. թեզ., Երևան, 74-75.

**Kalantaryan A., Karakhanyan G., Melkonyan H., Petrosyan H., Hakobyan N., Babayan F., Zhamkochyan A., Nawasardyan K., Hayrapetyan A.**, – 2009, Armenia in the cultural context of east and west, ceramics and glass ($4^{th}$-$14^{th}$ centuries), NAS RA Gitutyun publishing house, Yerevan.

**ДИАННА МИРИДЖАНЯН**
*Институт археологии и этнографии НАН*
*dianamirijanyan@gmail.com*

**ТИГРАН АЛЕКСАНЯН**
*Научно-исследовательский центр историко-культурного наследия*
*tigranalexanyan@yandex.ru*

# АРХЕОЛОГИЧЕСКИЕ ИССЛЕДОВАНИЯ АРУЧА

## РЕЗЮМЕ

Армяно-итальянские совместные археологические работы 2013г. были сосредоточены на территории между дворцом и церковью Св. Григория, где по проведенным раскопкам впервые были изучены археологические слои и хронология. В итоге раскопок у северной стены дворца, вдоль постройки были раскопаны неглубокие тониры, которые были встроенные в естественной скале. Среди них есть как большие, диаметром до 1м, так и малые по размерам тониры. В некоторых из них был густой слой пепела, обгоревшие останки костей.

Для исследования стойкости и состояния сохранности церковного фундамента было решено раскопать два шурфа. Один из них на южной стороне храма, к востоку от двери, второй в храме, на западной стороне, на право от двери. В шурфах были найдены в основном детали черепиц.

В ходе раскопок были обнаружены керамические сосуды, стеклянные и металлические изделия, монеты, изучение которых в сопоставлении с рукописными источниками дает нам важную информацию о роли поселения Аруч в средневековье.

**DIANNA MIRIJANYAN**
*Institute of archaeology and ethnography NAS*
*dianamirijanyan@gmail.com*

**TIGRAN ALEXANYAN**
*Scientific Research Center for Historical and Cultural Heritage*
*tigranalexanyan@yandex.ru*

# ARCHAEOLOGICAL INVESTIGATIONS AT THE SITE OF ARUCH

## SUMMARY

In 2013 Armenian-Italian archaeological collaboration in Aruch was concentratedin area between St. Grigor church and the palace, where archaeological levels and chronology were clarified for the first time.

Excavations at the northern wall of the palace yielded circular, not deep tonirs built inside rocks. The tonirs were up to 1m. in indiameter. In some of them there was ash and remains of burnt bones.

To check durability of the church`s bases and its extant situation,it was decided to dig two test pits, one on the southern side of the church and the other one inside the church, on the right side of the church exit. Found in the test pits were fragments of ceramic tiles.

Excavations discovered pottery, glass, metal materials and coins, which yielded important dataon the role of the area in the course of centuries.

ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ԲԱԴԱԼՅԱՆ
*Պատմամշակութային ժառանգության գ/հ կենտրոն*
*badalyanh@mail.ru*
ԱՐՄԱՆ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ
*Պատմամշակութային ժառանգության գ/հ կենտրոն*
*nalbandyan.arm@yandex.ru*
ՏԻԳՐԱՆ ԱԼԵՔՍԱՆՅԱՆ
*Պատմամշակութային ժառանգության գ/հ կենտրոն*
*tigranalexanyan@yandex.ru*

# ՆՈՐԱՀԱՅՏ ԴԱՄԲԱՐԱՆԱԴԱՇՏ ԵՂՎԱՐԴՈՒՄ

Սյունիքի մարզի Եղվարդ գյուղը գտնվում է մարզկենտրոն Կապան քաղաքից մոտ 22 կմ հյուսիս-արևելք: Այստեղ պատահականորեն բացվել էին կարասների բեկորներ[1]: Նախաձեռնելով դրանց ուսումնասիրությունը՝ պարզ դարձավ, որ գործ ունենք Ք. ա. I դարով թվագրվող կարասային թաղումների հետ: Հուշարձանի պեղումները կազմակերպելու նպատակով կազմվեց հնագիտական արշավախումբ, որը մոտ երկու ամիս ուսումնասիրեց նորահայտ դամբարանադաշտը՝ արդյունքում պեղելով չորս կարասային և մեկ քարե կառույցում կատարված թաղումներ:

Դամբարանները գտնվում են Եղվարդ գյուղից մոտ 3 կմ հյուսիս-արևելք՝ ծառածածկ բլրի լանջին (նկ.-1): Խորհրդային տարիներին բլուրն ամողջությամբ ծառահատվել է, հողը հարթեցվել և մշակվել: Բլրի ստորոտին ժամանակի ընթացքում, առաջացել է դեպի հարակից վարելահողերը տանող դաշտամիջյան ճանապարհ, որտեղ և գարնանային անձրևաջրերի հոսքի արդյունքում բացվել էին նշված կարասային թաղումները:

[1] 2007 թ. «Երկիր և Մշակույթ» կազմակերպության հովանավորությամբ սկսվել էին գյուղի կենտրոնում գտնվող Սբ Աստվածածին եկեղեցու (1700 թ.) վերականգնողական աշխատանքները, որոնք ավարտվեցին 2011 թ. (**Սիմոնյան Հ., Վասիլյան Լ., Բադալյան Հ., Նալբանդյան Ա., Ալեքսանյան Տ., Կարապետյան Հ.**, 2008, 268-311:): Վերականգնման աշխատանքներով պայմանավորված, 2011 թ. հունիսի 17-19-ը Պատմամշակութային ժառանգության գիտահետազոտական կենտրոնի հնագետները, Երկրորդ աշխարհամարտում զոհված եղվարդցիների հիշատակին նվիրված հուշարձանը եկեղեցու բակից տեղափոխելու հանգամանքից ելնելով, ժամանեցին գյուղ՝ անհրաժեշտության դեպքում պեղումներ ձեռնարկելու նպատակով: Եղվարդի գյուղապետ Սպարտակ Զաքարյանը տեղեկացրեց, որ բնակիչները գյուղից հանդամասեր տանող հողային ճանապարհին տեսել են կարասներ:



**Նկ․ 1-Տեսարան Եղվարդի հելլենիստական դամբարանադաշտից**

Դամբարանադաշտի պեղվող հատվածում դամբարանները իջեցվել են կավահողի մեջ, ժամանակի ընթացքում այն ծածկվել է հումուսի 20-30 սմ շերտով: Քանի որ առաջին երկու կարասները հայտնաբերվեցին հենց ճանապարհի վրա, որոշվեց հետագա պեղումները շարունակել ճանապարհի այդ հատվածին հարակից տարածքներում՝ առաջին հերթին ձախակողմյան մասում, լանջն ի վեր. այս ժամանակ էլ բացվեցին ևս երեք դամբարաններ:

**N 1 դամբարան:** Գտնվում է հանդամաս տանող ճանապարհի վրա, և երթևեկության պատճառով կարասը բավականին վնասվել էր: Այս անոթը (բարձր. 75 սմ, իրանի տրամ. 55 սմ) դրված էր հորիզոնական դիրքով, արևելք-արևմուտք ուղղվածությամբ՝ բերանը դեպի արևելք, որի շրթնամասերը չեն պահպանվել (նկ․–2):

Կարասային թաղման պեղումներից հայտնաբերվեցին մեկ զույգ ոսկյա օղեր, բրոնզե փոքրիկ զանգուլակ, մեկ ամբողջական ծորակավոր սափոր, արծաթե մանյակ, երկաթե դանակ, երկաթե աղեղնաձև իր, երեք հատ երկաթե կեռիկներ և աննշան քանակությամբ ոսկորներ: Քանի որ կմախք չհայտնաբերվեց, չհաշված մի քանի մանր քայքայված ոսկորները, ենթադրվում է, որ այստեղ կատարվել է դիակիզման ծեսով թաղում:





Նկ. 2-3 -Դամբարաններ N 1 և N 2

**N 2 դամբարան:** Կարասային թաղումը բացվեց ճանապարհի վրա՝ գրեթե նրա մակերևույթին: Հորիզոնական դիրքով դրված կարասն ուներ 100x70 սմ չափեր, արևմուտք-արևելք ուղղվածություն՝ բերանն ուղղված դեպի արևմուտք և փակված հարթ սալաքարով (նկ.-3): Կարասի մեջ հայտնաբերվեց մեծ քանակությամբ ոսկրաբանական մնացորդներ և բավական հարուստ հնագիտական նյութ. բեկոտված փոքր կճուճ, արծաթե մանյակ, արծաթե ոսկեպատ մատանի, կնիք (գեմմա), բրոնզե հայելի, բրոնզից կախազարդեր, դանակ, ոսկյա զույգ ականջօղ, բրոնզե թիակ, արծաթե դրամ՝ պարթևական Միհրդատ II արքայի պատկերով, կարմիր սարդիոնից ուլունքներ և այլն:

**N 3 դամբարան:** Գտնվել է ճանապարհի ձախակողմյան մասում՝ բլրի թեք լանջին՝ 60-70 սմ խորության վրա: Այստեղ դեռևս Խորհրդային տարիներին տեխնիկայի միջոցով կառուցվել էր նշված ճանապարհը, ապա փորձ էր արվել բլուրը մելորացնել: Այդ է պատճառը, որ կարասը գտնվեց ջարդված վիճակում: Կարասի չափերն են 123x80 սմ, բերանի տրամագիծը՝ 30 սմ, հատակի տրամագիծը՝ 17 սմ: Կարասը դրված էր հորիզոնական դիրքով՝ արևելք-արևմուտք ուղղությամբ՝ բերանը դեպի արևելք, փակված հարթ սալաքարով: Պեղումների ժամանակ բացվեցին գանգն ու կմախքի որոշ մասեր՝ շատ վատ պահպանված վիճակում: Կմախքը պառկած էր արևելք-արևմուտք ուղղությամբ՝ կծկված աջ կողի վրա: Կմախքին զուգահեռ՝ հորիզոնական դիրքով տեղադրված էր վատ պահպանված երկաթե դաշույն: Կարասի ներսից հայտնաբերվեցին նաև բրոնզե երեք օղեր, որոնցից երկուսը հպված էին իրար: Հանգուցյալը տղամարդ էր, հավանա-

բար՝ զինվորական, ինչի մասին են վկայում դաշույնը և զրահի մասեր հանդիսացող օղակները:

**N 4 դամբարան:** Բացվեց ճանապարհի ձախակողմյան մասում՝ N 3 կարասային թաղումից մոտ 2մ դեպի հյուսիս: Թաղումը կարասային էր՝ անոթը դրված ուղղահայաց դիրքով: Կարասից պահպանվել էր միայն հատակը: Քանի որ պեղումների ժամանակ ոսկորներ չհայտնաբերվեցին, ենթադրվում է, որ կարասի ավերման ժամանակ էլ ոչնչացվել էր կմախքը: Կարասն ուներ դարչնագույն մակերես և հարթ հատակ: Անոթի հատակամասի վրայից հայտնաբերվեցին բրոնզե զույգ ականջօղ, երկու ապարանջան, կարմիր սարդիոնից՝ երկու և գիշերից՝ մեկ ուլունքահատիկ:

**N 5 դամբարան:** Հայտնաբերվեց բլրի թեք լանջին: Դամբարանն իրենից ներկայացնում էր 210x140 սմ չափերի մի կառույց՝ շարված անմշակ քարերով և կապակցված հողի շաղախով: Պատերի առավելագույն բարձրությունը 40 սմ է: Դամբարանի հատակը սալարկված էր մանր բազալտե քարերով, որի վրա էլ, ըստ երևույթին, կատարվել է թաղումը: Կառույցն ուներ արևելք-արևմուտք կողմնորոշում (նկ.-4): Դամբարանի պեղումների ժամանակ, փափուկ սևահողի մեջ հայտնաբերվեցին կարմրա-վարդագույն և դեղնավուն երանգի խեցանոթների առանձին բեկորներ՝ այդ թվում կանթեր, շրթեր: Հատակի վրայից գտնվեցին մարդու ատամներ և կմախքի տարբեր մասերից վատ պահպանված մանր ոսկորներ: Տղամարդու՝ հավանաբար զինվորականի դամբարանում առկա էր գնդաձև վերջավորությամբ ավարտվող բռնակով, քայքայված երկաթե դաշույն՝, որի մոտ բրոնզե մի օղակ՝ նման N 3 դամբարանից հայտնաբերվածներին և հարավ-արևմտյան անկյունում տեղադրված վարդագույն միականթ սափոր, որի իրանին առկա է միջացիկ անցք:



**Նկ. 4- N 5 դամբարան**

Նմանատիպ դամբարանային կառույց Հայաստանում դեռևս պեղված չէ, չնայած որ հելլենիստական ժամանակաշրջանում կա-յին տարբեր ճարտարապետությամբ կառուցված դամբարաններ՝ քարարկղային, սալարկղային, աշտարակաձև, որոնք, սակայն էա-կանորեն տարբերվում են N 5 դամբարանից:

Նույնը չի կարելի ասել կարասների մասին: Կարասների մեջ թաղումներ կատարվել են դեռևս ուշ ուրարտական ժամանակա-շրջանում և շարունակվել Ք. ա. VI-V դդ., որոնցից հայտնաբերվել են Արգիշթիխինիլիից[2], Ագարակից[3], Իջևանից[4] և այլ հուշարձաննե-րից: Կարասային դիադրումով և դիակիզումով հուղարկավորում-ները վաղ հելլենիստական դարաշրջանում հաճախակի են դառ-նում, իսկ I դարում ընդունում են մասսայական բնույթ: Հայաստա-նում վաղ և ուշ անտիկ ժամանակաշրջանի կարասային թաղում-ներ հայտնի են Գառնիից[5], Արտաշատից[6], Դվինից[7], Սևանի ավա-զանից[8], Ներքին Նավերից[9], Թալինից[10], Օշականից[11], Աղաբլուրից[12], Երևանից[13], Վաղարշապատից[14], Բենիամինից, Շիրակավանից, Ջրափիից[15] և այլ վայրերից: Հատկապես հետաքրքիր են Գառնիում և Սևանի ավազանում հայտնաբերված երկկարասային թաղում-ները[16]:

Կարասային թաղման տարածումը Հայաստանում տեղիք է տվել տարբեր կարծիքների: Կան հետազոտողներ, որոնք գտնում են որ հելլենիստական կարասային թաղումները Հայաստան են ներմուծ-վել Վիրքից [17], Աղվանքից [18], Միջագետքից [19]: Մեկ այլ տեսակետի

---

[2] **Мартиросян А. А.**, 1974, 51, 55.
[3] **Аветисян П. С.**, 2003, 52.
[4] Նյութերը պատրաստվում են հրատարակման Ս. Հմայակյանի կողմից:
[5] **Аракелян Б. Н.**, 1957, 13-16; **Хачатрян Ж. Д.**, 1976, 8-17.
[6] **Խաչատրյան Ժ. Դ**, 1981, 32.
[7] **Ղաֆադարյան Կ. Գ.**, 1952, 82-84; **Ղաֆադարյան Կ. Գ.**, 1974, 35; **Քոչարյան Գ. Գ.**, 1991, 25-29.
[8] **Լալայան Ե.**, 1938, 73; **Խաչատրյան Ժ. Դ., Քալանթարյան Ա. Ա.**, 1972, 59-62.
[9] Նյութերը պատրաստվում են հրատարակման:
[10] **Կարապետյան Ի., Ենգիբարյան Ն., Մելքոնյան Հ.**, 2008, 260-267.
[11] **Есаян С. А., Калантарян А. А**, 1988, 59.
[12] **Օհանյան Հ.** 87.
[13] **Демирханян А.**, 2010, 11-14.
[14] **Խաչատրյան Ժ. Դ., Թորոսյան Ռ. Մ.**, 1976, 99-100.
[15] **Եգանյան Լ.**, 2000, 50; **Եգանյան Լ.**, 2002, 111-119.
[16] **Хачатрян Ж. Д.**, 1976, 24-25.
[17] **Куфтин Б. А.**, 1950, 78.
[18] **Казиев С. И.**, 1960, 18.
[19] **Խաչատրյան Ժ. Դ.**, 1981, 32; **Խաչատրյան Ժ. Դ.**, 1976, 28.

համաձայն թաղման այս ձևը ուրարտական արմատներ ունի [20]:

Ինչպես տեսանք դամբարանների պեղումները տվեցին հարուստ հնագիտական գտածոներ՝ զենքեր, զրահի մասեր, զարդեր և արդուզարդի պարագաներ, կնիք, դրամ, խեցանոթներ և այլն:

Եղվարդի դամբարանադաշտից հայտնաբերվեցին երկու **ապարանջան**, երկուսն էլ N 4 կարասային կանացի թաղումից: Առաջինը արծաթե, լավ պահպանված, մանկական՝ 4,7x5.0 սմ տրամագծով օձագլուխ ապարանջան է (աղ․V-1, աղ․VI-2): Ձվաձև, ճկված մեջքով ապարանջանն աչքի է ընկնում օձի պատկերների ռեալիստորեն ձևավորումով, որտեղ հստակ ընդգծված են օձի գլխի դիմային մասը, աչքերը և մարմնի գծանախշերը: Տարբեր կենդանիների՝ օձի, առյուծի և խոյի գլուխներով զարդարված ապարանջաններն ի հայտ են գալիս I հազարամյակի սկզբներից և տարածում ստանում Ք. ա. VI-IVդդ.: Հելլենիստական շրջանում օձի գլխի ձևավորումով ապարանջանները ամենատարածված զարդերից էին՝ պատրաստված մեծամասամբ բրոնզից և արծաթից: Այս ապարանջանները տեղական արտադրանք են: Օձագլուխ ապարանջաններ հայտնաբերվել են բազմաթիվ հուշարձաններից՝ Արտաշատից[21], Գառնիից[22],Օշականից[23], Դվինից[24] և այլն: Առյուծագլուխ ոսկե ապարանջաններ հայտնաբերվել են Սիսիանի իշխանական դամբարանից[25], իսկ արծաթե և բրոնզե՝ Գառնիից[26]:

Հաջորդ ապարանջանը հայտնաբերվեց օձագլուխ ապարանջանին հպված: Զարդն ունի օվալաձև տեսք, որի տրամագիծը 6-6,9 սմ է: Պատրաստված է կտրվածքում կլոր մետաղալարից, նախորդ ապարանջանի պես ներճկված: Ապարանջանի ծայրերը հաստանում են և իրար չեն միանում: Մակերեսը պատված է հասկաձև մանր զարդանախշով, իսկ հաստացող եզրերը ստանում են կենդանակերպ տեսք (նկատվում են աչքեր և երկարավուն ականջներ, մանատիպ ապարանջաններ հայտնի են Գառնիից[27], Գեղադիրից[28], Օշականից[29],Կարմիր բլուրից[30]: Այսպիսի ապարանջաններից որոշ-

---

[20] **Мартиросян А. А.**, 1974, 31; **Тирацян Г. А.**, 1988, 104; **Հակոբյան Հ.**, 2010, 201; **Կարապետյան Ի., Հմայակյան Ս., Հակոբյան Հ.,. Վարդանյան Ռ, Թումանյան Գ., Ավետիսյան Պ., Տիրացյան Ն.**, 1996, 36-37.

[21] **Խաչատրյան Ժ. Դ.**, 1981, 74.

[22] **Аракелян Б. Н.**, 1957, նկ. 44; **Хачатрян Ж. Д.**, 1976, 87-88.

[23] **Есаян С. А., Калантарян А. А,** 1988, 63-64.

[24] **Քոչարյան Գ. Գ.**, 1991, 52.

[25] **Խաչատրյան Ժ. Դ.**, 2009, 29.

[26] **Хачатрян Ж. Д.**, 1976, 87.

[27] **Хачатрян Ж. Д.**, 1976, աղ. XVIII, նկ. 15, 30.

[28] **Խաչատրյան Ժ. Դ.**, 1966, 88.

[29] **Есаян С. А., Калантарян А. А**, 1988, աղ. XLII, նկ. 9-10.

[30] **Тирацян Г. А.**, 1988, рис. 39; **Вайман А. А., Тирацян Г. А.**, 1974, табл. II.

ները ծայրերում ունենում են նաև ոճավորված՝ հիմնականում օձի պատկեր հիշեցնեղ զարդանախշեր:

Կլոր կտրվածքով, մետաղալարից պատրաստված ապարանջանների ձևերն են կրկնում երկու **մանյակները:** Առաջինը հայտնաբերվեց N 1 թաղումից: Մանյակը պատրաստված է կտրվածքում կլոր, բարակ,արծաթե մետաղալարից և ունի 17 սմ տրամագիծ: Ծայրերում այն հաստանում է, եզրերը հարթ կտրված են (հատույթի տրամ.՝ 1,1 սմ), շրջանաձև: Մանյակի մակերեսին առկա են սուր գործիքով արված հորիզոնական և ուղղահայաց գծերից կազմված հասկազարդեր (աղ․VII-1):

Երկրորդ մանյակը հայտնաբերվեց N 2 կարասից: Այն ևս պատրաստված է արծաթե կլոր մետաղալարից, սակայն ավելի բարակ է և փոքր (տրամ.՝ 13սմ), իսկ՝ հաստացող, կտրվածքում շրջանաձև ծայրերը (կտրվածքի տրամ.՝ 0,8սմ) հպվում են իրար: Ի տարբերություն առաջինի՝ այս մանյակն անզարդ է: Ելնելով սրա փոքր չափերից կարծում ենք, որ այն մանկահասակ աղջկա է (աղ․VII-2): Բարակ մետաղալարից պատրաստված մանյակների այս ձևը գալիս է նախորդ՝ Ք. ա. VI-IVդդ. մշակույթից, որոնց մեկ կամ երկու ծայրերը կորացված են՝ կապելու նպատակով[31]: Հելլենիստական ժամանակաշրջանում նման մանյակների այլ օրինակներ առայժմ հայտնի չեն:

Պեղածո զարդերի հաջորդ տեսակը **մատանին** է: Այն հայտնաբերվեց N 2 դամբարանից: Մատանին պատրաստված է արծաթից և պատված՝ ոսկյա բարակ թիթեղով: Մակերեսին պահպանված է զույգ ակոսաձև զարդանախշ, որը հազվագյուտ երևույթ է այս դարաշրջանի ոսկերչության համար: Մատանու վրա, օվալաձև ակնաբնի մեջ ամրացված է մուգ կարմիր քարից (նռնաքար) պատրաստված օվալաձև ակնաքար (աղ․V-3): Այսպիսի ոչ բարձր՝ ակնաբնով մատանիները տարածում են ստանում Ք. ա. I դ սկսած՝ հետագա դարերում կատարելագործվելով և հասնելով մինչև մեր օրերը: Սրանք հիմնականում պատրաստված են արծաթե լայն թիթեղից, որի վրա, օվալաձև ակնաբնի մեջ տեղադրված ամենատարածված քարատեսակը կարմրավուն սարդիոնն է, սակայն հանդիպում են նաև ագաթ, նռնաքար և այլն: Մեր օրինակը առանձնանում է նրանով, որ ենթարկվել է կրկնակի մշակման՝ պատվելով ոսկյա թիթեղով: Նմանատիպ արծաթե մատանիներ հայտնի են Գառնիից[32] և Արտաշատից[33]: Էգեյան աշխարհում տարածված էին նմանատիպ

---

[31] **Есаян С. А.**, 1976, табл. $145_{10}$; **Есаян С. А.**, 1969, 289; **Мнацаканян А. О., Тирацян Г. А.**, 1961, 72; **Կարապետյան Ի. Ա.**, 2001, 78.

[32] **Хачатрян Ж. Д.**, 1976, 106.

[33] **Խաչատրյան Ժ. Դ.**, 1981, 82.

մատանիների ոսկյա օրինակները, որոնցից Հայաստանից հայտնաբերվել են Սիսիանի դամբարանից չորս օրինակ, մեկը՝ շարժական ակնաբնով[34] և Սոդքի (Սոնասար) դամբարանից երկու օրինակ[35]:

Դամբարանների պեղումներից հայտնաբերվեցին երեք զույգ հետաքրքիր **ականջօղեր**, որոնք իրենց բազմազանությամբ ամենատարածված զարդերից են հելլենիստական մշակույթում և մեծ քանակությամբ հայտնաբերվում են կանացի թաղումներից: Այս զարդերը պատրաստված են բրոնզից և արծաթից, իսկ ոսկյա տարբերակները հանդիպում են հազվադեպ: Եղվարդից գտնվածները երկու տիպի են: Առաջին տիպը երկու զույգ ականջօղեր են, որոնք հայտնաբերվել են N 1 և N 2 թաղումներից (աղ. V-5-6): Այս ոսկյա օղակաձև ականջօղերը պատրաստված են քառակող ոլորված մետաղալարից, որոնից մեկի ծայրերը բարակում և կապվում են իրար: Առաջին զույգի օղերն ունեն տարբեր չափեր (տրամ.՝ 2,3 և 2,6 սմ): Երկրորդ զույգ օղերն ունեն 2,7 սմ տրամագիծ: Այսպիսի հյուսածո զարդեր հելլենիստական Հայաստանում հանդիպում են ոչ հաճախ: Օշականից[36] և Երևանից՝ (Ավանից)[37] հայտնաբերվել են նման բրոնզե ականջօղեր, որոնք թերի են, իսկ Գառնիի և Գեղադիրի նույն եղանակով պատրաստված ապարանջանները թվագրվել են Ք. ա. IV-III դդ[38].: Նույն եղանակով է պատրաստված նաև Սոնասարի դամբարանից հայտնաբերված բրոնզե մանյակը, որը պատվել է ոսկե բարակ թիթեղով[39]: Նմանատիպ հյուսածո զարդերի կիրառումը փաստված է նաև երկաթի լայն տարածման ժամանակաշրջանում, որոնցից հայտնաբերվել են մի քանի հուշարձաններից (Խրթանոց, Գոլովինո, Ջրառատ, Բերդ և այլն):

Երկրորդ տիպի զույգ ականջօղը հայտնաբերվել է N 4 դամբարանից: Այն պատրաստված է բրոնզե բարակ, կլոր լարից: Լարի անցքից ամրացված են խոշոր կաթիլաձև քարե կախիկներ, որոնց ծայրերը առանձնացված են: Ականջօղին ագուցված են կլոր փոքրիկ օղեր՝ զարդին տալով գեղեցիկ տեսք: (աղ. V-4): Այսպիսի ականջօղերից հանդիպում են քննարկվող ժամանակաշրջանում, որոնց կախիկները հիմնականում պատրաստված են ուլունքներից: Օշականից, Գառնիից, Արտաշատից[40] հայտնաբերվել են նման մի քանի ականջօղեր, որոնց կախիկները, ինչպես Եղվարդինը՝ երկկոն են:

---

[34] **Խաչատրյան Ժ. Դ**, 2009, 32, աղ. XVI.
[35] **Խաչատրյան Ժ. Դ.**, 2013, 64-65, աղ. VIII.
[36] **Есаян С. А., Калантарян А. А**, 1988, աղ. XLII, նկ. 6.
[37] **Демирханян А.**, 2010, աղ. 19 ա.
[38] **Խաչատրյան Ժ. Դ.**, 1966, 91; **Хачатрян Ж. Д.**, 1976, 90.
[39] **Խաչատրյան Ժ. Դ.**, 2013, 63, աղ. VI.
[40] **Խաչատրյան Ժ. Դ.**, 1981, 80; **Хачатрян Ж. Д.**, 1976., 102-103; **Есаян С. А., Калантарян А. А.**, 1988, աղ. XLIV, նկ. 12-13.

Արդուզարդի պարագաներից են **հայելին** և **թիակը**, որոնք գտնվել են N 2 դամբարանից: Բրոնզե հայելին կլոր է, 16,2 սմ տրամագծով, ամբողջական և լավ պահպանված: Շրջանաձև հայելու եզրագծով ձգվում է թեք գծիկների զարդաշար: Հելլենիստական ժամանակաշրջանում տարածված էին բռնակով և առանց բռնակի հայելիները: Եղվարդի հայելին ունեցել է երկաթից բռնակ, որի հետքերը պահպանվել են նրա եզրին՝ անցքի հետ միասին: Անցքին զուգահեռ՝ հակառակ եզրին պահպանված է փոքրիկ ամրակ, որով, ենթադրվում է, որ հայելին ամրացվել է կաշվե աստառին, ինչի մնացորդները առկա են նրա վրա (աղ. VII-3): Նման հայելիները Ք. ա. II-I դդ. թվագրվող թաղումներից հաճախ հադիպող մետաղական իրերից են, որոնք դրվել են որպես ուղեկցող նյութ կանացի թաղումներում: Հանդիպող հայելիների մեջ կան նաև զարդանախշված օրինակներ: Հայելիները պատրաստված են բրոնզից ու արծաթից և դամբարաններում դրանց տեղադրվելը հավանաբար ունեցել է ծիսական նշանակություն: Կա կարծիք, որ հայելիները դամբարաններում դնելու ավանդույթը կապված է սարմաթների հետ, որոնցից ամբողջական և կոտրված վիճակում հայտնաբերվում են Մերձսևծովյան և Հյուսիսկովկասյան տարածքներում՝ սարմաթական և սկյութական դամբարաններում[41]: Հայաստանում հայելիներ հայտնաբերվել են Գառնիից[42], Արտաշատից[43], Դվինից[44], Այգեշատից[45], Կաթնաղբյուրից[46], Օշականից[47], Բենիամինից, Անուշավանից[48] և այլ հուշարձաններից:

Անտիկ շրջանում տարածված **թիակը** ծառայել է անոթներից անուշաբույր յուղեր հանելու համար: Եղվարդի բրոնզե թիակը բարակ, երկարավուն գործիք է, որի մի ծայրը սուր է, մյուսը աստիճանաբար տափակելով վերածվում է եռանկյունաձև հարթության: Թիակի կոթի և տափակ մասի միջև առկա է ռելիեֆ զարդանախշ: Ունի 9,4 սմ երկ. (աղ. IV-7, աղ. VI-1,): Զարդանախշված և անզարդ թիակներ հայտնաբերվել են Գառնիից՝ չորս հատ, որոնց երկարությունը տատանվում է 10-15 սմ սահմաններում[49] և Սիսիանի դամբարանից՝ երկու օրինակ, որոնցից մեկն ամբողջական է և զար-

---

[41] Եգանյան Լ., 2003, 85-86.
[42] **Аракелян Б. Н.**, 1951, 47; **Аракелян Б. Н.,** 1957, 15; **Хачатрян Ж. Д.**, 1976, 97.
[43] **Խաչատրյան Ժ. Դ.**, 1981, 85; **Խաչատրյան Ժ. Դ.**,, 1977, 55.
[44] **Кочарян Г., Калантарян А., Кафадарян К.**, 2008, 162, табл. XXIII, рис. 2.
[45] **Թորոսյան Ռ., Տեր-Մարտիրոսով Ֆ.**, 1976, 265.
[46] **Սաստրյան Ե.**, 1981, 113.
[47] **Есаян С. А., Калантарян А. А**, 1988, 65.
[48] **Եգանյան Լ.**, 2001, 11.
[49] **Хачатрян Ж. Д.**, 1976, 101.

դանախշված, 11,2 սմ երկ., իսկ մյուսը ջարդված է և պահպանված մասն ունի 6,9 սմ երկ.[50]:

Բացի զենքերից և զարդերից ի հայտ եկան նաև այլ մետաղե իրեր՝ բրոնզե **զանգակ,** մի քանի **օղակներ**, **դրամ**: Զանգակն ամբողջական է, կիսագնդաձև (3,7 սմ բարձր., բերանի տրամ.՝ 4,1 սմ), որի գագաթին առկա է կախելու նպատակով արված օղակ (աղ. VII-4): Ունի երկաթից, 2,7 սմ երկարությամբ լեզվակ, բավականին քայքայված վիճակում: Զանգակների օգտագործումը սկսվում է դեռևս բրոնզեդարյան ժամանակաշրջանից և փոփոխություններ կրելով հասնում մինչև միջնադար: Կոնաձև և կիսագնդաձև կախիկ-զանգակները տարածված էին նաև հելլենիստական մշակույթում, որոնք ըստ երևույթին կախվել են կենդանիների վզից: Ասվածի վառ ապացույցն է զանգակի հետ միասին հայտնաբերված երկաթե աղեղնաձև իրը, որի կենտրոնական հատվածում պահպանվել է երկաթե մետաղալարից պատրաստված կեռիկ՝ զանգակը կախելու համար: Աղեղնաձև իրը իր հերթին կախվել է կենդանու վզից: Այն ունի 26,5 սմ բացվածք: Զանգակները հիմնականում հայտնաբերվում են դամբարաններից և դրանք հավանաբար օգտագործվել են նաև թաղման ծիսակատարության ժամանակ:

N 3 դամբարանից գտնվեցին երեք, և N 5 կարասից մեկ բրոնզե նույնատիպ օղակներ, որոնցից Հայաստանում հանդիպում են առաջին անգամ: Առաջին հայացքից մատանի հիշեցնող այս օղակները, բավականին ծանր են զարդ լինելու համար: N 3 թաղումից հայտնաբերվածները միաչափ են և ունեն 2,7 սմ տրամագիծ: Դրանցից երկուսը հայտնաբերվեցին միմյանց ամուր հպված վիճակում: Չորրորդ օղակը ունի 3,1 սմ տրամագիծ: Բոլոր չորս օղակների մակերեսները ունեն հետաքրքիր նիստավոր ոճավորումներ: Սրանք չափազանց ուշագրավ հայտնագործություններ են, չունեն իրենց զուգահեռները և դժվար է որևէ հստակ մեկնաբանություններ կատարել դրանց իսկության մասին: Քանի որ հայտնաբերվել են տղամարդկանց թաղումներից, ապա հնարավոր է, որ դրանք հանդիսանան զինվորական հագուստի մասեր:

Արծաթե մետաղադրամի դիմերեսին պատկերված է Պարթևների արքայից արքա Միհրդատ II-ի (Ք. ա. 123-88 թթ.)՝ կիսանդրին՝ գլխին խույրով, դեմքով ուղղված դեպի ձախ, իսկ դարձերեսին՝ Արշակ I -ը գահին դեպի աջ նստած (աղ. IV-6): Ք. ա. II դ. վերջին և հատկապես I դ. Հայաստանում, Աղվանքում, Վրաստանի արևելյան և կենտրոնական շրջաններում տարածված էին պարթևական

[50] Խաչատրյան Ժ. Դ., 2009, 63.

դրախմաները, որոնք համեմատաբար հաճախ են հանդիպում հատկապես Հայաստանի արևելյան մասում[51]:

Քարե իրերից են **կնիքը** և **ուլունքները**: Կնիքը (գեմմա) գտնվեց N 2 դամբարանից: Այն օվալաձև, տափակ կանաչավուն քար է, 1,6 սմ երկարությամբ, 1,4 սմ լայնությամբ, միջանցիկ անցքով: Հարթ մակերեսին պատկերված են բարակ գծերով արված ինչ-որ կենդանու՝ հավանաբար թռչնի պատկեր (աղ.IV-4): Նման կնիքները լայն տարածում ունեին քննարկվող ժամանակաշրջանում: Առհասարակ հելլենիստական շրջանում հանդիպում են ապակիներից և տարբեր քարերից պատրաստված կնիքներ, որոնց մակերեսին փորագրված են լինում զանազան՝ որսի, ռազմի, կենցաղի և այլ տեսարաններ, ինչպես նաև տարբեր կենդանիներ:

Ուլունքները բազմազան չեն: Դրանք կարմիր սարդիոնից և գիշերից են (աղ.IV-1-3, 5): Սարդիոնից ուլունքները տձև և գնդաձև են, իսկ գիշեր քարատեսակինը՝ տափակ: Հատկապես աչքի է ընկնում նարնջագույն սարդիոնից կաթիլանման ուլունքը՝ միջանցիկ անցքով: Բացի այս ուլունքներից կա նաև մեկ բրոնզե օղակաձև ուլունքահատիկ:

N 2 կարասային թաղումից գտնվեցին 8 կախազարդեր: Դրանցից յոթը միևնույն տեսակի են. շրջանաձև, հարթ մակերեսով կախազարդեր, որոնք շղթայով միանում են խողովակաձև կախիկներին (կախիկներից պահպանվել են չորս հատ): Դրանց մակերեսը զուրկ է որևէ պատկերից: Պահպանվել են թերի կամ ամբողջական վիճակում: Մյուս կախազարդը, որը մեզ է հասել թերի վիճակում, ունի օղակաձև կառուցվածք: Սա, հավանաբար, եղել է սրանցից կենտրոնականը: Սրանք լարի միջոցով կարող էին ամրացվել թե ճակատակալին, թե վզնոցին, թե հագուստին:

Բացի վերոնշյալներից՝ գտածոների թվում են նաև բազմապիսի այլ մանր իրեր, այդ թվում՝ բրոնզե օղ, վարսակալ, երկաթե կեռիկներ և այլն: Դամբարաններից հայտնաբերվեցին նաև մի շարք զենքեր՝ մասնավորապես դաշույններ[52]: Ուղեկցող նյութերից են **կճուճը** և երկու **սափորը**. յուրաքանչյուրը առանձին կարասային թաղման հետ: Դրանք ունեն ծիսական նշանակություն (չի բացառվում, որ լինեն աճյունասափորներ):

Կճուճը գտնվեց N 2 թաղումից՝ բեկոտված վիճակում: Այս Փոքր երկկանթ կճուճն ունի դարչնագույն փայլուն մակերես, փքված իրան, դուրս ճկված, կլորացող եզրով շուրթ, լայն, հարթ հատակ: Կճուճի կանթերը հորիզոնական են, որոնց միջև առկա են զույգ

[51] **Акопян Г. П.**, 1984, рис. 7.

[52] Դաշույնները առայժմ գտնվում են լաբորատոր մշակման փուլում և կհրատարակվեն հետագայում առանձին լրացուցիչ հաղորդումով:

ելուստներ: Չափերն են. բարձրություն՝ 14 սմ, բերանի տրամագիծ՝ 9 սմ, հատակի տրամագիծ՝ 10,5 սմ (աղ.I): Կճուճների նախորդ դարաշրջաններից եկող այս տիպը լայն տարածում ունի հելլենիստական մշակույթում: Դրանց մեծ մասին բնորոշ է դարչնագույն, մոխրագույն, դեղնավուն, կարմրավուն մակերեսը: Հանդիպում են երկկանթ, անկանթ, ելուստավոր տիպերի, սակայն հորիզոնական կանթերով կճուճները հազվադեպ են: Այս տիպի անոթները դարեր շարունակ օգտագործվել են կենցաղում: Նման կճուճների օրինակներ հանդիպում են մի շարք հուշարձաններում՝ երկկանթանի՝ Դվինից[53], ելուստներով՝ Ավանից[54], անկանթ՝ Օշականից[55], Գառնիից[56] և այլն:

Երկրորդ անոթը հայտնաբերվեց N 1 դամբարանից: Այն փայլեցված աղյուսագույն մակերեսով, լայն, հարթ հատակով և դուրս ճկված շրթով սափոր է: Սափորի շրթից սկսվում և ուսի վրա ավարտվում է լայն, ստորին հատվածում նեղացող կանթը: Կանթի հակառակ կողմում անոթն ունի կլոր, երկար ծորակ: Սափորի իրանի վրա առկա են ևս երկու եռաթև, փոքր «կեղծ» կանթեր: Սակայն սափորն հետաքրքիր է հատկապես նրանով, որ շրթի վրա կա մի խոյի գլխի տեսքով հետաքրքիր ելուստ: Սափորի բարձրությունը 15 սմ է, հատակի տրամագիծը՝ 9 սմ, բերանի տրամագիծը՝ 7,7 սմ (աղ.II):

N 5 դամբարանից գտնված երրորդ անոթն իրենից ներկայացնում է մի կարմրավուն, փայլեցրած մակերեսով միականթ սափոր: Այն ունի դուրս ճկված, սրվող գագաթով շուրթ, փքված իրան, նեղ վիզ, հարթ, լայն հատակ: Սափորի լայն, աղեղնաձև կանթն սկսվում է շրթից և ավարտվում ուսի վրա: Սափորի բարձրությունը 19 սմ է, բերանի տրամագիծը՝ 8,5 սմ, հատակի տրամագիծը՝ 13 սմ: Սափորի իրանին առկա է շրջանաձև անցք (աղ.–III):

Այսպիսով կարելի է փաստել, որ բոլոր դամբարանները համաժամանակյա են և ըստ հնագիտական նյութերի համեմատական վերլուծության, դամբարանների կառուցվածքի և թաղման ծեսի՝ դամբարանադաշտը կարելի է թվագրել Ք. ա. I դ.: Թվագրումը ամրապնդվում է մ. թ. ա. I դ. առավել տարածված տիպի դրամով:

Դամբարանադաշտի տարածքը, մեծ չափերի է հասնում, ըստ նախնական դիտարկման՝ մոտ 6 հա: Դամբարանադաշտի պեղումները որոշակի դժվարություններ էին ներկայացնում, քանի որ դամբարանները վերգետնյա նշաններ չունեն: Տարածքում հայտնաբեր-

[53] **Քոչարյան Գ. Գ.**, 1991, 42.
[54] **Демирханян А.**, 2010, 70.
[55] **Есаян С. А., Калантарян А. А**, 1988, աղ. XLIII, 10.
[56] **Хачатрян Ж. Д.,** 1976, 32-34.

վել են պատերի մնացորդներ, իսկ սրանցից որոշակի հեռավորության վրա կան վաղ անտիկ բնակավայրի ավերակների հետքեր:

Ինչպես հայտնի է այս տարածքները հարուստ չեն հելլենիստական հուշարձաններով և Եղվարդի դամբարանադաշտի հայտնաբերումը հույժ կարևոր է հարավային Սյունիքի հելլենիստական մշակույթը համակողմանի ուսումնասիրելու համար:




**Աղյուսակ I - N 2 դամբարանից հայտնաբերված կճուճի լուսանկարները և գծանկարները:**




Աղյուսակ II - N 1 դամբարանից հայտնաբերված սափորի լուսանկարները և գծանկարները:




Աղյուսակ III - N 5 դամբարանից հայտնաբերված սափորի լուսանկարները և գծանկարները:



**Աղյուսակ IV - Եղվարդի հելլենիստական թաղումներից հայտնաբերված քարե և մետաղյա մանր իրեր-1-2, 4. Սարդիոնից ուլունքներ, 3. Գիշերից ուլունք, 6. Միհրդատ II -ի արծաթե մետաղադրամը . 7. Բրոնզե թիակ:**



Աղյուսակ V - Եղվարդի հելլենիստական թաղումներից հայտնաբերված քարե և մետաղյա մանր իրեր -1-2. N 4 դամբարանից հայտնաբերված ապարանջաններ, 3. Մատանի, 4. N 4 դամբարանից հայտնաբերված ականջօղեր, 5-6. Ոսկյա օղեր:




**Աղյուսակ VI - Եղվարդի հելլենիստական թաղումներից հայտնաբերված քարե և մետաղյա մանր իրեր - 1. Թիակ, 2-3. Ապարանջաններ:**




**Աղյուսակ VII - Եղվարդի հելլենիստական թաղումներից հայտնաբերված քարե և մետաղյա մանր իրեր- 1. Արծաթե մանյակ՝ N 1 դամբարանից, 2. Արծաթե մանյակ՝ N 2 դամբարանից, 3. Հայելի, 4. Զանգակ:**

## ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ

**Ասատրյան Ե.**, Կաթնաղբյուրի դամբարանը, Լրաբեր հասարակական գիտությունների, 1981, թիվ 2:

**Եգանյան Լ.**, Հայելին Հայաստանի անտիկ թաղման ծեսում, ԳԱԱ, Շիրակի հայագիտական հետազոտությունների կենտրոն, «Գիտական աշխատություններ», h. 6, Գյումրի, 2003:

**Եգանյան Լ.**, Բենիամինի դամբարանադաշտի մ. թ. ա. 1 - մ. թ. 1-2-րդ դարերի խեցեղենը, ԳԱԱ, Շիրակի հայագիտական հետազոտությունների կենտրոն, «Գիտական աշխատություններ», h. 5, Գյումրի, 2002:

**Եգանյան Լ.**, Ծիսական իրերը Բենիամինի անտիկ թաղումներում, ԳԱԱ, Շիրակի հայագիտական հետազոտությունների կենտրոն, «Գիտական աշխատություններ», h. 4, Գյումրի, 2001:

**Եգանյան Լ.**, Անտիկ Շիրակի թաղման ձևերը, ԳԱԱ, Շիրակի հայագիտական հետազոտությունների կենտրոն, «Գիտական աշխատություններ», h. 3, Գյումրի, 2000:

**Թորոսյան Ռ., Տեր-Մարտիրոսով Ֆ.**, Ուշ հելլենիստական ժամանակաշրջանի դամբարաններ Էջմիածնի շրջանի Այգեշատ գյուղում, Պատմա-բանասիրական հանդես, թիվ 2, 1976:

**Լալայան Ե.**, Դամբարանների պեղումներ Խորհրդային Հայաստանում, Երևան, 1938:

**Խաչատրյան Ժ. Դ.**, Սիսիանի դամբարանը (մ.թ.ա. I դարի երկրորդ կես), Հայաստանի հնագիտական հուշարձանները 21, Երևան, 2009:

**Խաչատրյան Ժ. Դ.**, Հնագիտական հայտնագործություններ Գեղադիրում, Լրաբեր հասարակական գիտությունների, 1966, թիվ 1:

**Խաչատրյան Ժ. Դ.**, Ուշ հելլենիստական շրջանի եզակի դամբարան, Լրաբեր հասարակական գիտությունների, 1977, թիվ 1:

**Խաչատրյան Ժ.Դ.**, Հայաստանի Սոդից գավառի անտիկ դամբարանը, Բանբեր հայագիտության, Երևան, 2013, N 1:

**Խաչատրյան Ժ. Դ.**, Արտաշատ II, Անտիկ դամբարանադաշտեր (1971-1977 թթ. պեղումները), Երևան, 1981:

**Խաչատրյան Ժ. Դ., Թորոսյան Ռ. Մ.**, Նյութեր Վաղարշապատի հյուսիսարևելյան դամբարանադաշտից, Լրաբեր հասարակական գիտությունների, 1976 թիվ 2:

**Խաչատրյան Ժ. Դ., Քալանթարյան Ա. Ա.**, Մարտունու և Վարդենիսի շրջանների անտիկ և միջնադարյան հուշարձանները, Լրաբեր հասարակական գիտությունների, 1972, թիվ 1:

**Կարապետյան Ի. Ա.**, Հայաստանի նյութական մշակույթը, Երևան, 2001:

**Կարապետյան Ի., Ենգիբարյան Ն., Մելքոնյան Հ.**, Անտիկ դարաշրջանի կարասային թաղում Թալինից, Հուշարձան տարեգիրք, Գ-Ե, Երևան, 2008:

**Կարապետյան Ի., Հմայակյան Ս., Հակոբյան Հ.,. Վարդանյան Ռ, Թումանյան Գ., Ավետիսյան Պ., Տիրացյան Ն.**, Երիտասարդ ուրարտուհու թաղումը: ՀՀ-ում 1993-

1995 թթ. Հնագիտական հետազոտությունների արդյունքներին նվիրված գիտական նստաշրջան, զեկուցումների թեզեր, Երևան, 1996:
**Հակոբյան Հ.**, Վանի թագավորության և Հին Հայաստանի մշակութային ժառանգության խնդիրները, Հուշարձան տարեգիրք, Զ, Երևան, 2010:
**Ղաֆադարյան Կ. Գ.**, Դվին քաղաքը և նրա պեղումները, h 1, Երևան, 1952:
**Ղաֆադարյան Կ. Գ.**, Հեթանոսական շրջանի դամբարաններ Դվինում, Պատմաբանասիրական հանդես, 1974, թիվ 4:
**Սիմոնյան Հ.,Վասիլյան Լ., Բադալյան Հ., Նալբանդյան Ա., Ալեքսանյան Տ., Կարապետյան Հ,** Վերականգնվում է Եղվարդի ՍԲ. Աստվածածին եկեղեցին, Հուշարձան տարեգիրք, Դ-Ե, Երևան, 2008.
**Քոչարյան Գ. Գ.**, Դվին III, Դվինը անտիկ դարաշրջանում, Երևան, 1991.
**Օհանյան Հ.**, Հայաստանի անտիկ բնակավայրերի մշակույթը (ըստ Արագածոտնի բնակավայրերի պեղումների), թեկնածուական ատենախոսություն, ձեռագիր աշխատանք:
**Аветисян П. С.**, Предварительные результаты раскопок памятника Агарак, Археология, этнология и фольклористика Кавказа, Эчмиадзин, 2003.
**Акопян Г. П.**, Древняя Армения в торговле Запада с Востоком (первые века нашей эры), СА, 1984, N 2.
**Аракелян Б. Н.**, Гарни I, Результаты раскопок 1949-1950 гг.,Ереван, 1951.
**Аракелян Б. Н.**, Гарни II, Результаты раскопок 1951-1955 гг., Ереван, 1957.
**Вайман А. А., Тирацян Г. А.**, Кармир-блырский некрополь эллинистического времени, ВОНАН, 1974.
**Демирханян А.**, Северо-восток Еревана в эпоху Арташесидов. Фрагменты материальной и духовной кыльтуры по данный античного поселения в Аван-Ариндже (II в. до н. э.-I в. н. э.), Ереван, 2010.
**Есаян С. А.**, Древняя культура племен Северо-восточной Армении (III-I тыс. до н. э.), Ереван, 1976.
**Есаян С. А.**, Могильник раннеармянского времени в поселке Берд Шамшадинского района, ИФЖ, 1969, N 4.
**Есаян С. А., Калантарян А. А**, Ошакан I, Основные результаты раскопок 1971-1983 гг., Ереван, 1988.
**Хачатрян Ж. Д.**, Гарни V. Античный некрополь (Результаты раскопок 1956-1972 гг.). Ереван, 1976.
**Казиев С. И.,** Альбом кувшинных погребений, Баку, 1960.
**Кочарян Г., Калантарян А., Кафадарян К.**, Античный слой на территории центрального квартала и цитадела Двина, Двин IV. Город Двин и его паскопки (1981-1985 гг.), Ереван, 2008.
**Куфтин Б. А.**, Материалы к археологии Колхиды II. Тбилиси, 1950.
**Мартиросян А. А.**, Аргиштихинили, Археологические памятники Армении, 8, Ереван, 1974.
**Мнацаканян А. О., Тирацян Г. А.**, Новые данные о материальной культуре древней Армении, ИОНАН, 1961, N 8.
**Тирацян Г. А.**, Культура Древней Армении, Ереван, 1988.

**АРУТЮН БАДАЛЯН**
*Научно-исследовательский центр историко-культурного наследия*
*badalyanh@mail.ru*
**АРМАН НАЛБАНДЯН**
*Научно-исследовательский центр историко-культурного наследия*
*nalbandyan.arm@yandex.ru*
**ТИГРАН АЛЕКСАНЯН**
*Научно-исследовательский центр историко-культурного наследия*
*tigranalexanyan@yandex.ru*

# НОВОНАЙДЕННЫЙ МОГИЛЬНИК В ЕХВАРДЕ

## РЕЗЮМЕ

Село Ехвард Сюникского марза расположено в 22-х км на северо-восток от областного центра г. Кафан. В 3-х км на северо-востоке села были случайно обнаружены кувшинные погребения, после первичных археологических исследований стало ясно, что здесь имеем дело с могильником эпохи эллинизма. В результате археологических раскопок, проводившихся 2011-2012 гг. археологической экспедицией Научно исследовательского центра историко-культурного наследия Армении при Министерстве культуры РА было выявлено 4 кувшинных и 1 каменное погребений.

**Погребение N 1.** Находилось на дороге ведущей к пашне и в результате её эксплуатации кувшин был значительно повреждён. Этот сосуд размерами 75x55 см был уложен горизонтально в направлении восток-запад горлышком к востоку, венчик которого не сохранился.

В результате раскопок этого кувшинного погребения обнаружены пара золотых серёг; маленький бронзовый колокольчик; один цельный кувшин со сливным трубчатым носиком; серебряное колье; железный нож; железный дугообразный предмет; 3 железных крючка и очень малое количество костей. Вероятно здесь был проведён ритуал кремации, скелет не был обнаружен, за исключением нескольких мелких разъеденных костей.

**Погребение N 2.** Это кувшинное погребение обнаружилось на дороге. Карас размерами 100x70 см расположен в направлении запад-восток горловиной к востоку и был укрыт гладкой каменной плитой. Здесь в большом количестве были костные остатки и довольно богатый археологический материал: небольшой горшок с двумя ручками; серебряное колье; серебряное

позолоченное кольцо; гемма; бронзовое зеркало; бронзовые подвески; нож; пара золотых витых серёжек; бронзовая лопаточка; приколка для волос; серебряная монета с изображением парфянского царя Митридата II (123-88гг.); бусы из красного сердолика и др..

**Погребение N 3.** Обнаружено в левой части дороги на склоне холма, на глубине 60-70 см. Кувшин найден разломанным; его размеры 123x80 см, диаметр горлышко 30 см, диаметр донышка 17 см. Карас расположен горизонтально в направлении запад-восток горловиной к востоку и был укрыт гладкой каменной плитой. В процессе раскопок обнаружен череп и некоторые части человеческого скелета в очень плохом состоянии. Скелет был уложен в направлении восток-запад в вправоскорченном положении. Параллельно скелету горизонтально был уложен железный кинжал плохой сохранности. Внутри караса найдены 3 бронзовых кольца, два из которых соприкасались.

**Погребение N 4.** Обнаружена в левосторонней части дороги в 2 м северней от 3 кувшинного погребения. Погребальные кувшин находился в вертикальном положении. От караса сохранилась лишь часть основания, а верхняя часть отсутствовала. Вероятно с уничтожением верхней части караса уничтожился и скелет, так как при раскопках не обнаружили костей. Карас имел коричневую поверхность и ровное дно. На дне караса обнаружили пару бронзовых серёжек; 2 браслета; 2 бусины из красного сердолика и 1 из гагата (гешир).

**Погребение N 5.** Обнаружено на крутом склоне холма. Захоронение размером 210x140 см представляло собой сооружение уложенное по периметру необработанными камнями искреплённое простым земляным раствором. Максимальная высота стенок 40 см. Дно могилы было уложено мелкими базальтовыми плитами, на котором по-видимому и совершилось захоронение. Сооружение ориентировано по направлению восток-запад (фото 4). При раскопках могилы обнаружены отдельные фрагменты сосудов красно-розовой и желтоватой керамики, в том числе ручки, венчики и пр.. На дне найдены зубы человека и плохо сохранившиеся мелкие кости отдельных частей скелета. В этой могиле, предположительно воина, присутствовал довольно разъеденный железный кинжал, с ручкой завершённой шаровидным утолщением, рядом с которым было бронзовое кольцо и в юго-зап. углу был уложен розовый кувшин с одной ручкой и с отверстием на тулове.

Таким образом можно констатировать, что все раскопанные могилы единовременны и согласно сравнительному анализу археологического материала, конструкций могил и похоронному обряду этот некрополь можно датировать началом I века до н.э.. Основанием для этого может послужить и найденная монета парфянского царя Митридата II.

Территория некрополя по предварительной оценке достигает 6 га. Раскопки захоронений сопряжены большими трудностями, так как могилы не имеют поверхностных признаков. На территории обнаружены остатки стен, а на некотором расстоянии от них видны следы развалин, исследования которых дадут новые сведения об античном поселении.

Как известно этот регион не богат эллинистическими памятниками и обнаружение Ехвардского некрополя весьма существенно для всестороннего изучения эллинистической культуры южного Сюника.

**HARUTYUN BADALYAN**
*Scientific Research Center for Historical and Cultural Heritage*
*badalyanh@mail.ru*
**ARMAN NALBANDYAN**
*Scientific Research Center for Historical and Cultural Heritage*
*nalbandyan.arm@yandex.ru*
**TIGRAN ALEXANYAN**
*Scientific Research Center for Historical and Cultural Heritage*
*tigranalexanyan@yandex.ru*

# NEWLY FOUND GRAVE-FIELD IN YEGHVARD

## SUMMARY

The village of Yeghvard is 22 km north-east from Kapan, the capital-city of Syuniq marz (province). About 3 km from the village all of a sudden karas (pot) burials were discovered. The studies proved that we had to deal with a cemetery of the Hellenistic period. The excavations were carried out by the expedition of the Scientific Research Center for the Historical and Cultural Heritage in 2011-2012. We revealed four karas burials and one stone grave-tomb.

**Gravetomb1** was located on the way to the pasture, and therefore the karas was rather damaged because of human activity. The vessel 75x55 cm in size was placed horizontally, was oriented east-west, with the mouth to the east; the rim was broken. In the karas we revealed two gold earrings, a small bronze bell, a wholly preserved jug, a silver necklace, an iron knife, an iron bow-shaped object, three iron hooks and a small amount of bones. Here, most possibly, was performed a burial with cremation, as no skeleton was found; only several small bones.

**Gravetomb 2** was found just on the road. The karas placed horizontally was 100x70 cm in size, oriented west-east, with the mouth to the west, which was closed with a slab. We found a lot of bone remains and rich archaeological material; shards of a small jug, a silver necklace, a gold-plated silver ring, a seal, a bronze mirror, bronze pendants, a knife, a pair of gold, plaited earrings, a bronze object, a hair-pin, a silver coin with the image of the Parthian king Mithridates, beads of cornelian, and so on.

**Gravetomb 3** was discovered on the left side of the road, on the slope of a mound, 60-70cm deep. The karas was broken, its sizes were 123x80 cm, the diameter – 30 cm, the diameter of the bottomв 17 cm. It was placed horizontally, oriented east-west; its mouth towards east, closed with a flat slab. While opening it

we discovered the scull and badly preserved parts of a skeleton. The skeleton was lying east-west crouched to the right. Parallel to the skeleton was placed horizontally a badly preserved iron dagger. Inside the karas three bronze rings, two attached to each other, were also found.

**Gravetomb 4** was opened on the left side of the road, about 2 km north from karas burial 3. The vessel was placed upright; only the bottom part has preserved, the upper part was missing. Possibly the skeleton was destroyed together with the vessel, as no bones were discovered during the excavations. The karas was brown, the bottom was flat. On the bottom a pair of bronze earrings, two bracelets, two beads of red cornelian and one of black agate were found.

**Gravetomb 5** was discovered on the slope of a mound. It was a construction of 210x140 cm in size, built of rough stone and earthen mortar. The utmost height of the walls was 40 cm. The floor was laid with small basalt stones, on which the burial was probably performed. The construction was oriented east-west (Fig. 4). During the excavations of the grave reddish-pink and yellowish shards of pottery, among them rims, handles and other parts were found. We also discovered human teeth and badly preserved small bones of various parts of a skeleton. There was a rusted iron dagger with a round ending handle, near it a ring and a pink, one-handle jug with a trough hole in the body in the south-west corner of the grave, which possibly belonged to a military man.

So we can state that all the graves were simultaneous and according to the comparative analyses of the archaeological materials, the structure of the graves, the burial rites the grave-field could be dated to the I century BC. Especially convincing is the discovery of the coin with the image of the Parthian king Mithridates II.

The territory of the grave-field was very big, probably reaching 6 hectares according to preliminary survey. The excavations of the graves meet some difficulties as they have no signs on earth proving their existence. We discovered remains of some walls on the area, and traces of ruins at some distance from them. The study of these will provide us with new information about this ancient settlement.

As we know these territories are not rich with Hellenistic monuments, and the discovery of the grave-field in Yeghvard is very important in the comprehensive study of the Hellenistic culture in the southern part of Syunic marz (province).

**GIA JOKHADZE**
*Dr. of Historical Sciences,*
*Professor, the Ilia Chavchavadze State University of Tbilisi*
*giajox@yahoo.com*

# RELIGION AS A MARKER OF IDENTITY

It is well known that a religious identity is a set of beliefs and practices generally held by an individual, involving adherence to codified beliefs and rituals and study of ancestral or cultural traditions, writings, history, and mythology, as well as faith and mystic experience.

During the early 1800s in the field of psychology, research on the subject of religion was considered important and ubiquitous. For example, researchers like G. Stanley Hall and William James conducted studies on the subject of religious conversion[1].

Another cardinal issue of this subject is Religious nationalism that implies the relationship of nationalism with a particular religious belief, dogma, or affiliation. This relationship can be divided into two aspects; the politicization of religion and the influence of religion on politics[2].

In the former aspect, a shared religion can be seen to contribute to a sense of national unity, a common bond among the citizens of the nation. Another political aspect of religion is the support of national identity, similar to a shared ethnicity, language or culture. The influence of religion on politics is more ideological, where current interpretations of religious ideas inspire political activism and action[3].

We should take into consideration that there was a superior identity in the Middle Ages – the religious identity in which, to figuratively say, other identities lived as if in the belly of a whale.

Religious identity implies that social unities should be created for encompassing more than one class and it frequently attempts to overcome even ethnic boundaries. Its message bears either national image or the universal one. A religious identity is the product of the spheres of communication and socialization. It is based on the imprints of cultural axes and their elements – values, symbols, myths and traditions – which are subsequently encoded into customs and rituals.

---

[1] Hall, 1904; Religion, community service, and identity in American youth, 1999, 243–253.
[2] Cypriot Muslims among Ottomans, Turks and British, 2011, 109–120.
[3] The Worldwide Rise of Religious Nationalism, 1996.

Religious identity is eager to unite one group of all those believers who, simultaneously, intend to accept definite symbolic codes, systems of values, ritual and belief traditions, and approaches toward ultra empirical reality… The religious unity is frequently linked with ethnic identity. Since the World Religions aim to erase or overcome ethnic boundaries, the majority of religious units coincide with ethnic groups[4].

This fundamental things shed light onto the last pagan and the first Christian Georgian king Mirian's life wherein religion was turned into an ethnic marker. Nevertheless, we intend to concentrate upon the allegorical or spiritual interpretations from the Georgian historical narratives.

Actually, the transformation or metamorphosis is the leading motif of Christianity. But in this case we need to recall the Apostle Paul's conversion: It took place on the road to Damascus where he reported having experienced a vision of the resurrected Jesus. The account in Acts 9:4 says that "he [Saul] who fell to earth, and heard a voice saying unto him, Saul, Saul, why persecutes thou me?" Saul replied: "Who art thou, Lord? And the Lord said, I am Jesus whom thou persecutes: [it is] hard for thee to kick against the pricks.[5]" From that experience he was blinded for three days and had to be led into Damascus by the hand. This life-changing experience and revelation convinced Paul that God indeed had chosen Jesus to be the promised messiah[6].

It should also be stressed that the Middle Ages is the cultural space where nearly everything is miraculous; The miraculous intervention is most often directed toward human beings who are in need of aid, be it a physical cure for an illness or a spiritual cure for moral failings. The supernatural and the miraculous are the central concepts of Christianity; we can trace Christian attitudes toward the marvelous by examining the evolving views of spiritual and intellectual leaders. Clearly the church was out either to transform the significance of traditional materials so profoundly as to alter the nature of the phenomenon entirely to conceal or destroy what is considered the most dangerous elements in traditional – what the Church called pagan – culture. Certainly the marvelous exerted a fascination on some minds; this was its social and cultural function.

Another reason for the emergence of the marvelous in this period is that the Church no longer had the same reasons to oppose it as it had done in the early Middle Ages. The marvelous had become less threatening, and the Church felt that it could tame it or turn it to advantage. Thus, what mattered was the pressure from certain secular social groups combined with the increased tolerance on the part of the Church.

4 Anthony D. Smith, 2008: 7–8.

5 The account in Acts 22:9 says his companions saw the light, but did not understand the voice of him who was speaking to Saul.

6 Acts 9:1–31, 22:1–22, 26:9–24.

The third phase is somewhat different from the first two. A sociological explanation is still in order, but something needs to be said about aestheticism of the marvelous, that is, its increased use as ornament. One characteristic of the marvelous is, of course, that of being produced by supernatural forces or beings. The marvelous also embraces a world of diverse objects and actions (Le Goff).

Using this schema we can trace the narrative of conversion of the Last pagan and the First Christian king of KartliMirian.

Let's recall the general plot of this episode:

Then Queen Nana fell ill with a severe and painful disease which nobody could heal. All the skillful physicians tried every one of their medicines, but without success. They told Queen Nana how this Roman slave girl, who was called Nino, had cured many sick people by her prayers. So she ordered her servants to bring Nino to her. They went and found her kneeling at prayer in the arbor under the bramble bush, and it was six o'clock. They told her the queen's command, to which Nino answered, "I have no authority to leave my humble tent. Let the queen come here to my dwelling, and she will surely be healed by Christ's power". The servants reported Nino's words to the queen, and carried her forth on her couch, accompanied by her son Rev and a crowd of people. When they came to St. Nino's abode, they set the queen upon her mat. Nino prayed and besought God for a long time, and then took her cross and touched the queen's head, feet and shoulders, making the sign of the cross. Immediately she recovered and got up in perfect health. And she confessed Christ saying, "There is no God except Christ whom this slave girl preaches".Henceforth she became Nino's friend, and came to know the True God.

When the king inquired how it was that she had been cured so rapidly, she told him everything, namely how she had been healed without medicine, by the touch of a cross. The crowds who had seen it confirmed the queen's story, so that King Mirian was filled with amazement and began to look for the faith of Christ. Now in the Book of Nimrod, which King Mirian possessed, he read the story of the building of the tower, when Nimrod heard a voice from heaven saying, "I am Michael, appointed by God to be commander of the east. In future times, the king will come from heaven to be a despised member of a despised race. But the terror of His name will put an end to worldly pleasures. Kings will forsake their realms to seek for poverty. He will heed you in your sorrow and deliver you". Then Mirian saw that the evidence of the Old and New Testaments was confirmed by the Book of Nimrod.

One summer day, being Saturday, the 20th of July, the king went on a hunting trip towards Mukhrani. Then that invisible enemy the devil tempted him by reviving in his heart the love of fire-worship and of idols. So the king said to four of his advisers, "We have behaved unworthily towards our gods by being idle in their service and letting these Christian magicians preach their doctrine in this Country, for their miracles are operated by sorcery. I have now decided to destroy all these believers in the cross unless they agree to serve the victorious gods of Georgia. I shall urge my wife Nana to repent and abandon her faith in the cross. If not, I shall

forget my love for her, and she shall perish with the others ".His companions, who were strongly prejudiced on this question, applauded his decision.

The king had now passed the outskirts of Mukhrani and arrived at the lofty hill of Tkhoti, from which he could see Caspi and Uplistsikhe. When he had reached the top and it was mid-day, the sun was obscured and it became as black as perpetual night. The region was enveloped in darkness and the members of the party lost touch with one another. The monarch was left by himself, anxious and afraid,he wandered about on the densely wooded hills until in his fear and anxiety he stood still in one place, losing all hope of being rescued. Then he began to muse, and said to himself, "After all, I have called on my own gods and found no comfort.Now. I wonder whether the Crucified One whom Nino preaches could save me from my plight. Light up this darkness for me, O God of Nino, and I will confess Thy name ! I will set up a Wooden Cross and worship it, and build a place to pray in, obey Nino and accept the faith of the Romans'.

After he had uttered these words, it became light, and the sun shone down in all its splendor. Then the king got down from his horse and stretched out his arms to the east towards heaven, saying, "Thou art God above all gods, Lord above all lords, Oh, Deity whom Nino proclaims. Now I know that Thou desirest my salvation, and I rejoice, blessed Lord, to come near unto Thee. I will set up a cross upon this spot, so that Thy name may be praised and this marvel commemorated forever." So he marked the place and departed, and Queen Nana and all the people came out to welcome the king home[7].

What we are interested in is the symbolic meaning of this fragment and ideological intention for the formation of such a text.

As the prior point we should take into account that we deal here with the creation of such a phenomenon as a - new king – new with his spiritual experience and with the new skills of leadership.

The establishment of Christianity was decided by Mirian’s will and choice, more exactly, by the temptation encountered by him while hunting on Mount Tkhoti. Here, three significant moments should be identified: the so-called “solar eclipse”, staying alone and wayward roaming in Tkhoti woods. Within the peril, encountered by the king, on the mount, the light and the dark opposed each other totally and, one can say, fatally, with their both physical and spiritual dimensions. The king’s roaming in the dark symbolically and existentially rendered the condition of the so called “northern country” under heathenism. The country’s religious mislead turned into the king’s personal experience. In a crucial situation, the lonely king stepped over the threshold, in order to return from hunting as a new personality and to lead the country into the new time. With its depth, the temptation having occurred to Mirian, is a sign of the eschatological and apocalyptic expectation

[7] LIVES AND LEGENDS OF THE GEORGIAN SAINTS.

